# ՊԻՈՆԵՐ



ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱ-ԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015. Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Լույս է տեսնում 1923 թվականից



## Այս համարում 10 • 86





*Հանձնված է տպագրության 30.VII.1986 թ.: Ստորագրված է տպագրության 18.IX.1986 թ.: ՎՖ 06922: Թուղթ օֆսեթ, $70\times100\,{}^{1}/_{16}$: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 69532: Պատվեր 1520 Գինը՝ 15 կոպ.:*

*Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:*

Сдано в набор 30.VII.1986 г. Подписано к печати 18.IX.1986 г. Формат $70\times100\,{}^{1}/_{16}$. ВФ 06922. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 69182. Заказ 1520. Цена 15 коп.

Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.




1986 ԹՎԱԿԱՆԸ ՄԱԿ-Ի ԿՈՂՄԻՑ ՀԱՅՏԱՐԱՐՎԵԼ Է ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՏԱՐԻ, ՈՐԻՆ ԵՎ ՆՎԻՐՎԱԾ ԷՐ ՕԳՈՍՏՈՍԻ 31-ԻՑ ՍԵՊՏԵՄԲԵՐԻ 4-Ը ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԱՅՐԱՔԱՂԱՔ ԵՐԵՎԱՆՈՒՄ ԲԱՑՎԱԾ «ԵՐԵԽԱՆԵՐԸ, ԱՌԱՋԸՆԹԱՑՆ ՈՒ ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆԸ» ՆՇԱՆԱԲԱՆՈՎ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՀԱՄԱԺՈՂՈՎԸ: ԱՅՆ ԿԱԶՄԱԿԵՐՊԵԼ ԷԻՆ ՄԱՆԿԱՊԱՏԱՆԵԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՈՄԻՏԵՆ՝ ՍԻՄԵԱ-Ն, ՍՍՀՄ ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿՈՄԻՏԵՆ, ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴԸ: ՀԱՄԱԺՈՂՈՎԻՆ ՄԱՍՆԱԿՑՈՒՄ ԷԻՆ 120 ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՊԱՏՎԻՐԱԿՆԵՐ՝ ԱՇԽԱՐՀԻ 160 ԵՐԿՐՆԵՐԻՑ: ԱՇԽԱՐՀԻ ՀԱՍԱՐԱԿԱՅՆՈՒԹՅԱՆ ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ ՀՐԱՎԻՐԵԼ ԱՃՈՂ ՍԵՐՆԴԻ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԻ ՎՐԱ—ԱՅՍ ԷՐ ՀԱՄԱԺՈՂՈՎԻ ՆՊԱՏԱԿԸ:

Խաղաղության ցույց Երևանում

Համաժողովի մասնակիցները գեղագիտական կենտրոնում

Ղ. Ղուկասյանի անվան քաղաքային պիոներպալատի սաների աշխատանքների ցուցահանդես-վաճառքը համաժողովի միջոցառումներից մեկն էր...









# Միսաք Մեծարենց 100

## Խունկ ու արցունք

Ցիր մ' արցունքով՝ կաթիլ մը խունկ
Սրբանոթին մեջ կցանե
Մայրս՝ որ կ'անցնի անտես դռնե,
Եվ երջանիկ՝ կը դընե ունկ

Անդրաշխարհեն եկող ձայնին:
Աչքերուն՝ որ գինք կը դիտեն
Կիրակմուտքի* խունկին ատեն՝
Ջեռքն անընդհատ կու տա խա՜չն հին:

Եվ ամենուն կու տա բաժին՝
Ծուխեն ծաղիկ մը ծափելի:
Ու ցայգամուտն է հայելի՝
Ուր կը ցոլա բոցն աշխուժին՝

Լուսահոգի զվարթուններուն՝
Զորս արբեցուց այս իրիկուն
Շաբաթօրյա խունկ ու արցունք:

Մայրս ալնոր չոքեր է ծո՜ւնկ...

---

Այս բանաստեղծությունը, առաջին անգամ տպագրվել է «Արևելյան մամուլ»-ում 1908 թ. հունիսի 24-ին, հեղինակի մահից երկու օր անց: Նույն օրը Սամաթիայի Ս. Գևորգ եկեղեցում տեղի ունեցավ սգո հանդեսը, և Պալըգլիի ազգային գերեզմանատանը հողին հանձնվեց բանաստեղծի մարմինը:




Կիրակմուտք — շաբաթ երեկոների հետ կապված ծիսակատարություն:

## ՈՒՍՈՒՑՉԻ ՕՐԱԳՐԻՑ

**ՎԻԿՏՈՐ ՀՈՎՍԵՓՅԱՆ**

Ես դժգոհ եմ իմ գործի արդյունքից:

Իմ աշակերտներից շատերը հայ գրականությունից հաջողությամբ քննություն են հանձնել բանասիրական ֆակուլտետներում, բայց դա ինձ քիչ է թվում: Ես ուզում եմ, որ նրանցից մեկը գա ու ասի.

— Երեկ Մեծարենց կարդացի ու զգացի, թե ինչ է նշանակում բանաստեղծություն, ինչ բան է բանաստեղծական այլաբանություն ու պատկերավորություն: Ահա մի տող. «Ամեն ծաղիկ խամրում մը ունի իրեն մոտ...»:

Իմ գործը ոչ այնքան Մեծարենցի կարճ կենսագրությունը սովորեցնելն է, ինչքան նրա խոր ու անպարփակ բանաստեղծությունների հմայքն զգացնելը: Դա այնքան էլ հեշտ չէ, բայց դա է իմ գործը:

**Սա իրիկո՜ւնն ըլլայի ես,**
**համայնական, չքնաղ, քաղցրիկ, լուսագես.**
**Եվ ամենուն տայի հուրքեն, ոսկիես:**
**Սա իրիկո՜ւնն ըլլայի ես:**

Ես ավարտում եմ Մեծարենցի բանաստեղծության ընթերցումն ու նայում եմ դասարանին՝ ստացած տպավորությունն ստուգելու համար:

— Այս բանաստեղծությունը կարծես թե ուրիշ է,— ճգնում է բացատրել մեկը:

— Այսի՞նքն,— խրախուսում եմ ես:

— Այս բանաստեղծությունը... ոնց որ երգ լինի... Ոնց որ նկար լինի, բայց ոչ թղթի վրա, այլ տարածության մեջ...

Դասարանի պահանջով ես մեկ ուրիշ էջ եմ բացում ու կարդում առաջին պատահած բանաստեղծությունը:

**Ծաղիկներեն հուշիկ թերթեր կը թափե**
**Բուրումներով օծուն հովիկն իրիկվան,**
**Հոգիներուն կիջնե երազ մը բուրյան,**
**Ի՜նչ հեշտին է մըթնշաղն այս սաղափե:**

— Ի՜նչ գեղեցիկ է տեսնում Մեծարենցը,— հրճվանքով ասում է նույն տղան, ու ինքս էլ հրճվում եմ նրա «գեղեցիկ տեսնելու» կարողությամբ:

Տղայի աչքերի մեջ մի թովիչ ճիգ է վառվել՝ հասնելու մեծարենցյան անուրջին: Ահա ես հենց այդ էի ուզում:

### ԲԻՆԿՅԱՆԻ ՃԱՆԱՊԱՐՀԸ

Մեծարենցին նվիրված արտաժամ պարապմունքի ժամանակ ընդհանուր բնութագրականից հետո սկսում եմ կենսագրությունը.

— Ծնվել է 1886 թվականին, Փոքր Հայքի Ակնա գավառի Բինկյան գյուղում:

Իմ «թույլ տեղը» Մերուժանը գիտի. հիշեցնում է ինձ իմ հաճախ կրկնածը. «Բանաստեղծին լավ ճանաչելու համար պետք է լինել նրա հայրենիքում»:

Ինձ էլ առիթ էր պետք, որ բացեմ քարտեզը: Գնացինք դեպի Նարեկ՝ եթե Նարեկացին է դասը... Դեպի Վան ու Խառակոնիս՝ եթե խոսում եմ Քուչակի, Ջարյանի կամ Գուրգեն Մահարու մասին... Դեպի Կարս՝ եթե Չարենցի կենսագրությունն է... Մի քանի անգամ Ախալքալաքից Արդահան ենք գնում-գալիս, եթե խոսք է բացվել Դեմիրճյանի մասին... Վարուժանն ու Սիամանթոն առիթ են՝ հասնելու Բրգնիք ու Ակն...

— Եթե բանաստեղծները չլինեին, մենք ի՞նչ առիթով պիտի սովորեինք Արևմտյան Հայաստանի ճանապարհները,— ասում է Մերուժանը:

Ես պատասխանել եմ՝

— Դուք չէիք սովորի, իսկ ես կմոռանայի:

Երբ ես քարտեզի վրայով բռնում եմ Բինկյանի ճանապարհը, տղան ընդհատում է.

-- Բա ինչո՞ւ մեզ այդպես չտարաք Դսեղ, Ղազարապատ, Գանձա...

— Դուք այդ տեղերը կգնաք մենակ, ինքնուրույն և ոչ մտովի...

Ու մենք գնում ենք դեպի Բինկյան:

Ես նկարագրում եմ Բինկյանն ու իր շրջապատը. Եփրատի կիրճը, ժայռերին ծվարած գյուղը, աղբյուրներ, վտակներ... Ակնի եզերքի գարունը՝ կիրճի քարափներին դեռ ձյուն կա, իսկ կիրճում ծաղկել են բալենիները...

Ես քարտեզի վրա ցույց եմ տալիս Բինկյանի ճանապարհը:

Հարցերով ամփոփելու ժամանակ տղան հրաշալի կրկնում է իմ ասածը՝ ցույց տալով Բինկյանի ճանապարհը:

Տղան նստում է տեղը, ու ես նայում եմ քարտեզին:

Թվում է՝ տղայի ցուցափայտի հետքը մնում է քարտեզի վրա, ու այդ ճանապարհով դեպի մեզ է գալիս մի գունատ, պայծառ պատանի... Գալիս է լուսեղեն տեսիլի պես, ետևում լույսի հետագիծը:

Հեռվում Բինկյանն է...

Երկուսի արանքում ձգված լուսեղեն ծիրը Բինկյանի ճանապարհն է:

### «ՏՈ՞ՒՐ ԻՆԾԻ, ՏԵՐ...»

Վեցերորդի Արմենը լավ չի հասկանում «Տուր ինծի, Տեր, ուրախությունն ան-



*Ծնողները*

*Բանաստեղծի ծննդավայրը*



անձնական» բանաստեղծությունը։ Ես նրան հանձնարարել եմ այս բանաստեղծությունը անգիր սովորել, ծրագրից դուրս։

Տղան դժվարությամբ սովորեց անգիրն ու հիմա արտասանում է։

Ես լսում եմ Արմենին, զգում նրա ջանքերն ու տագնապում՝ ինչո՞ւ չարչարեցի երեխային, երբ նա անգիր արտասանելուց հետո էլ ամբողջությամբ չի հասնում բանաստեղծության ոգուն։

Հետո հակառակվում եմ՝ լավ արեցի, տղան գնալով, գնալով, հետո կմոտենա բանաստեղծության էությանը։

Տարիներ անց ինչ-որ տեղ առիթ կլինի, և արդեն երիտասարդ դարձած տըղան կարտասանի.

**Տո՛ւր ինձի, Տեր, ուրախությունն**
**անանձնական,**
**Ծաղիկներու պես զայն ժողվեմ**
**ճամփուս վրա՝**
**Նայվածքներուն մեջ ամենուն և ամեն**
**օր…**

Նա իրեն լավ կզգա։

## ՄԵԾԱՐԵՆՑ ԵՎ ԴՈՒՐՅԱՆ

— Հարցեր ունե՞ք,— ասացի ես իններորդ դասարանում Մեծարենցի կենսագրականը հաղորդելուց հետո։

Ձեռք բարձրացրեց մի աշակերտուհի և հարցրեց.

— Մեծարենցն ու Դուրյանը ազգակա՞ն են…

Տարօրինակ, բայց և տարողունակ հարց… Ինչո՞վ են ազգական,— ակամայից խորհում եմ ես,— նրանո՞վ, որ երկուսն էլ շատ կարճ ապրեցին… Նրանո՞վ, որ երկուսն էլ մահացան թոքախտից… Այդ դեպքում Մեծարենցին ու Դուրյանին ազգական են նաև Պեշիկթաշլյանը, Տերյանը, Զարիֆյանը… Նրանո՞վ, որ «ապրած» ճակի մեջ իրենց տեսան, իրենց մեջ՝ փոթորկված ճակներ… Նրանո՞վ, որ Մեծարենցը Դուրյանին է կոչել հանճար («Հանճարի աչքերն անփույթ կնային»), Զարենցը՝ Մեծարենցին («Այս հիվանդ, հանճարեղ պատանին»), թե՞ նրանով, որ ազգանունների մեջ նմանություն կա՝ Մեծատուրյան (այդպես է Մեծարենցի իսկական ազգանունը), Դուրյան…

Ոգեղեն փոթորկում, բանաստեղծական աշխատանքի հարազատություն, ամենակարճ կյանքով մեծագույն վաստակ ու հիշատակ,— թերևս ամենից շատ այս ամենով են, իրոք, արյունակից Դուրյանն ու Մեծարենցը։

ՎԱՀԱՆ ԱՆԴՐԵԱՍՅԱՆ

# Նախանձիկը

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Արևային մի օր, երբ բոլորը լիության մեջ էին, երբ անցորդները սրտանց բարևում էին իրար, երբ կանայք երգելով մաքրում էին իրենց տները, տատիկները հեքիաթ էին պատմում սիրուն թոռնիկներին, աղջիկները պսակներ էին հյուսում դաշտերում, բանաստեղծները չքնաղ պոեմներ էին գրում, իսկ ձկնորսները առատ որս ունեին երկրի բոլոր ջրերում, ահա, այդպիսի մի օր քաղաքի խաչմերուկներից մեկում մրսում էր փոքրիկ Նախանձիկը։ Նա այնքան փոքր էր, որ հազիվ էր երևում՝ կպած շենքի մութ անկյունին։ Նա տուն չուներ և չգիտեր որտեղ տաքանա այդ առանց այն էլ տաք օրը։ Վերջապես խիզախեց մոտենալ մի անցորդի։

— Խնդրում եմ, ինձ տեղ տուր քո սրտում,— բարակ ձայնով ասաց նա

Անցորդը շշմած շուրջը նայեց, բայց ոչինչ չտեսավ։

— Խնդրում եմ։ Ես միայն կտաքանամ ու կհեռանամ,— բարակ ձայնով խնդրեց Նախանձիկը։

Այս անգամ անցորդը նայեց ձայնի ուղղությամբ և հազիվ նշմարեց Նախանձիկին, որը ոսպի մեծություն ուներ և նման էր սև սարդի։

— Իսկ դու ինձ չե՞ս վնասի,— կասկածեց անցորդը։

— Ոչ, ի՞նչ ես ասում, մի՞թե ինձ նման փոքրիկ և անմեղ արարածը կարող է որևէ մեկին վնասել,— երգեցիկ ու խեղճ ձայնով ծվծվաց Նախանձիկը։

Անցորդը խղճաց նրան և թույլ տվեց մտնել իր սիրտը, տաքանալ այնտեղ։ Նախանձիկը տաքացավ, տաքացավ և այլևս դուրս գալ չուզեց մարդու սրտից։ Տաքությունից սկսեց աճել, մեծացավ ու դարձավ մի մեծ Նախանձ։ Դա արդեն այն փոքրիկ, սև սարդի նման Նախանձիկը չէր։ Նախանձը նման էր մեծ, սև կարիճի։ Նա այնքան մեծ էր, որ հազիվ էր տեղավորվում մարդու սրտում։ Եվ, ահա, Նախանձը որոշեց իր համար մի քանի տուն ևս գտնել։

Մի օր այդ մարդու տանը հյուրեր կային։



Նախանձն առիթը բաց չթողեց և այնպես արեց, որ մարդը սկսեց բամբասել մի երևելի անձնավորությունից: Մարդն անկախ իրենից սկսեց չարախոսել ու չարակամությամբ վարակել մյուսներին: Հյուրերն իրենք էլ չիմացան, թե ինչպես ճեղքեր բացեցին իրենց սրտերում, որոնցով ներս սողոսկեց Նախանձը: Ի միջի այլոց ասեմ, որ Նախանձը կարող էր մի քանի սրտերում միաժամանակ ապրել: Նա կարող էր բաժանված լինել և միաժամանակ՝ միավորված: Նա այդպիսին էր:

Անցան տարիներ: Նախանձը մեծացավ, մեծացավ, դարձավ մի հսկա հրեշ: Սարսափելի էր այդ հրեշն իր դժնդակ տեսքով, աննկարագրելի չարությամբ, անհագուրդ ախորժակով, բամբ, դղրդացող ձայնով: Նրա շունչը տարածվեց ամենուր: Մարդիկ, նրանից վարակվելով, սկսեցին ատել իրար, չարախոսել, սպանել: Չարագործությունն աշխարհում աճում էր խոտի առատությամբ, և հրեշն ուրախանում էր դրանից: Չարագործությունն էր նրա սնունդը, և այդ սնունդն առատ էր ծովի նման:

— Ես եմ տիեզերքի տերը,— գոչում էր հրեշը,— բոլորն իմ ստրուկներն են, իմ սնունդը:

Երգը հեռացավ երկրից, մարդիկ փողոցներում քայլում էին ներփակված ու լուռ՝ ոտքերի տակ միայն ցեխաջրի ճողփյուն հանելով, տներում տխուր լռություն էր, տատիկները թոռնիկների համար էլ ոչ մի հեքիաթ չունեին և պատուհանների առջև նստած՝ իրենց մնացյալ օրերն էին հաշվում ու հառաչում, աղջիկները դաշտերից ծաղիկներ չէին քաղում, բանաստեղծները գրում էին անհոգի, միապաղաղ տողեր, ձկնորսները ժամերով նստած սպասում էին խայծ կլանող ձկանը, բայց ձուկն անհետ կորել էր երկրի ջրերից:

Մարդիկ նզովում էին այն անկամ անցորդին, որ ընդունեց Նախանձիկին: Նըզովում էին ու չգիտեին, որ Նախանձիկն արդեն իրենց սրտերում էլ է բույն դրել և ներսից թունավորում է իրենց:

Ահա, այսպիսի սարսափելի ժամանակներ են եղել աշխարհում:

Աշխարհի բժիշկները մինչև հիմա կըռվում են այդ հիվանդության դեմ, բայց մինչև հիմա չի հաջողվել ոչնչացնել նրա բացիլը, աշխարհի երեսից իսպառ վերացնել նախանձը:



ՎԱՐՈՒԺԱՆ ԱՅՎԱԶՅԱՆ

# ՍՈՒՐԲ ՀՈՎՀԱՆՆԵՍ ՍԱՐԻ ԱՄԱՌԸ

ՎՍՍՀ Ծալկայի շրջանում է գտնվում Այազմա գյուղը: Եվ ակնարկը այդ գյուղի առօրյային է վերաբերվում:

Աղբյուրի ակը թափանցիկ ջրի տակ, երեք բռնցքաչափ քարերի արանքում էր: Ակի շուրջը ձմեռ-գարուն չհալվող բարակ, սպիտակ սառույցի եզրերի մեջ ջուրը թափանցիկ էր ու բյուրեղի պես բեկբեկուն: Հովիվը հենց աղբյուրի կողքին էր պառկել և աղբյուրի ու իր արանքում պառկելուց մաշված կարճ խոտի վրա բացել էր հացի տոպրակը: Դեղնած, պանրի աղաջուրն ու ձվածեղի յուղը քաշած թերթի վրա, հացի արդեն չորությունից կոր մնացած փաթեթների մեջ, ձվածեղ կար, պանիր, խաշած կարտոլ, և հովիվը պտղունցով մեկ ձվածեղ, մեկ պանիր էր պոկում, հացը թաթախում ջրի մեջ ու դանդաղ ծամում: Աղբյուրից իջնող փոքրիկ առվակի կողքերին, որտեղ խոտը բարձր էր ու գարնան խիստ կանաչ, հոտը արածում էր, ջուր խմում, էլի մի երկու բերան խոտ պոկոտում ու էլի ջուր խմում:

Ոչխարի կճղակներով փուփուխիկ դարձած խոզանի վրա դարձդարձիկ պտտվող քամին օգոստոսի խիստ իջած արեգակի լույսը աղբյուրի ջրի պես բեկբեկուն փշրելով՝ միալար ծփանքի մեջ էր պահում ժարի խաղաղությունը: Հովիվը կարծես թե քնած էր, որովհետև եթե մտածեր, թե ահա աշունն արդեն իջնում է սարերի վրա, և օդը ծանրանում է, որպեսզի կարողանա մառախուղ պահել, ապա գայլի վտանգ ու հսկողություն պիտի ունենար: Եթե մտածեր, թե ահա հնձվորները բարձր խոտհարքներում գերանդի են քաշում, տղաները խոտն են իջեցնում գյուղ, կանայք հնձածն են հավաքում, աշակերտները՝ կարտոֆիլ, ու դպրոցն սկսվում է, ապա տան հոգսուկարիքի անհանգստություն ու անհամբերություն պիտի ունենար: Բայց իր համբերությունը հովվի էր, չէր մասնատվում (էսօր ի՞նչ օր է, ամսի քանի՞սն է. հնձի ժամանակի օր է)՝ պիտի սարերից վերջին իջնողը ինքը լինի, ետևից՝ ձյունը, և ինչպես բույրն է հանձնվում քամուն, որպեսզի չկորչի (որովհետև քամին գիտի, թե հատկապես այդ բույրը ուր տանի), հովիվն այդպես հանձնվել էր ժամանակի չափում չունեցող սարի անվերջ խաղաղությանը:—Էս մեր լուռ միշտ սարի նույն պատկերը պատմող Սարգիս քեռի չծերացող հովիվն է:

Սարալանջի մյուս՝ արևմտյան երեսը երեք օր առաջ էին հնձել՝ չորացած լասերի տակ ու առհասարակ խոտհարքում խոզանը ամպի խոնավություն էր քաշում ու լուռ, աննկատելի նոր ճյուղ տալիս: Սարալանջի լայնությամբ ձգվող լասերը ամպի ստվերի տակ փակվում էին ու շրջակա արեգակ ունեցող սարալանջերի արտացոլքից խունացած փայլում: Հենց այդ լռության մեջ էլ թափանցեց ձորակից իջնող կանանց գլխաշորերի գույնզգունությունը: «Է-հե՜յ» կանչեցին պատմություններ պատմող հին կանայք, բայց նրանք դեռ ցածրում էին՝ ձայնը վերև դժվար բարձրացավ, և լռությունը այն իր մեջ չառավ: «Աղջկերք, ջրի ո՞րդ եք վազում: Հրես աղբյուրը՝ էն երեսն անցնես՝ կերևա»,— ասացին կանանցից, և հայտնի չէր, թե ով և ում ասաց: Նրանք ձորափերի խոտհարքը նոր էին հավաքել-պրծել, և իջնել-բարձրանալուց ոտքերը դողդողում էին: Հետո, երբ հասնեին լասերի գլուխ ու նստեին շունչ առնելու, և երբ ամեն մեկը գտներ իր կարևոր պատմելիքն ու եռանդուն լողը, պարապ, ա-

ռանց խոսքուզրույցի մասնակցության մի կին խռնարհ ու աննկատելի կգնար, ջուր կբերեր: Եվ հին, տարիքով կանայք նստեցին, ավելի երիտասարդները նրանց կողքերին շարվելով հացի կապոցները բացեցին, իսկ դեռ սարի ծակուծուկը չիմացող ու սարի լռության դեմ միայնակ մնալուց վախեցող աղջիկները չորացած լասերից գրկերով խոտ բերեցին, դրեցին նստած կանանց թիկունքներում, որպեսզի սարի պաղ քամին վերելքից տաքացած նրանց մեջքերը չպաղեցնի: Աղջիկները ութերորդ կամ իններորդ դասարան փոխադրված աշակերտուհիներ էին և հարևան Նարդևան գյուղում պիտի միջնակարգը ավարտելու գնային: Նրանք անտեղի էին խառնվում մեծերի խոսքին, որովհետև մեծերը իրենց նոր ուսուցիչ-ուսուցչուհիների հետ նախկին դասընկերներ էին և նրանց մասին կարճ պատմություններ էին պատմում: Երկու կամ երեք հնձվոր ունեցող տներից մայրերի հետ սարում խոտ հավաքելու եկած հինգերորդ-վեցերորդ դասարանցի տղաները, իրար հետ առանձնացած, կուզեկուզ որոնելով, քայլում էին լասերի միջև. վայրի մեղուն հիմա է լցնում ու ձմռան համար փակում իր մեղրահացերը, «Ծո ո՞ւր կերթաք, Բաղդո, Գագիկ, ծո չե՞ք իմանա. էկեք հաց կերեք, հաց ուտենք՝ վեր ենք կենում»,— կանչում էին կանանցից, բայց տղաները ցույց էին տալիս, թե չեն լսում, որովհետև եթե այդպես մինչև սարալանջի մյուս երեսը գնային, մայրերի աչքին էլ չէին երևա ու կգնային տեսնելու կիսաքանդ Կենտ եկեղեցին, Սարգիս քեռու բինայում մածուն կուտեին, Աբգարի քար ժայռի մասրենիներից մասուր կհավաքեին, Պաղ աղբյուրից ջուր կխմեին ու կհասնեին հնձվորների մոտ՝ համարյա սարի կատարը, որտեղ, կարող է պատահեր, հնձվորները հանգստանալիս լինեին ու թողնեին, որ մի տասը-տասնհինգ մետր հնձեն:— Էս էլ մեր շատ խոսող, անունների փոխարեն իրար միայն «աղջի» ասող ու հնձվորից ետ չմնացող խոտ հավաքողներն են:

Բոլորից բարձր՝ սարի կատարին մոտ, Փարվանա լճին ու Փարվանա գյուղին նայող հարավային լանջին, հնձվորները ցերեկվա հաց ուտելուց հետո առաջին լասերի կեսին էին հասել ու նոր-նոր բացվում էին, որովհետև գարնանագլխի հեղեղներից սարալանջի հողը իջել էր, ու բացված քարերի մեջ հնձելը դժվար էր: Գյուղամերձ հանդերի ու մարգագետինների հունձը, երբ հնձվորը գերանդին թևերին պահած խուզում է ու քարերի, մացառուտների պատճառով կարգին լաս չի բացվում, խաղ ու պար է՝ պատանիները այնտեղ են գերանդի քաշելու շարժվածքը սովորում: Իսկ հարթ, ճնճղուկ խրտնեցնելու քար անգամ չունեցող սարալանջերը, որտեղ խոտը ծաղիկ է՝ հասակը՝ կարճ, ցողունը՝ հաստլիկ, իրենք էին պահանջում, որ ոչ թե երեսանց խուզվի, այլ արմատին մոտ կլպելու պես թրաշող հունձ արվի: Հնձվորը թեթևակի չոքում է, մեջքը կռացնում, սրաքարը տեղափոխում մեջքին, թևերը քշտում ու բացվում է, և մինչև լասի վերջին հասնելը գերանդի ծեծելու համար նստել չկա: Հընձվորը բացվում է, գերանդու բուկը գցում գետնին, և բարակած, մաշված գերանդու փայլուն շեղբը խիտ, կարկուտից ու անձրևից գունդուկծիկ դարձած խոտի մեջ երեք-չորս մետր լայնությամբ լաս է բացում: Բոլոր խոտհարքների սահմանները իմացող հին հընձվորը, որն առջևից սահմանային լասն է տանում, ճիշտ գիտի այն պահը, երբ հնձվորն այնպես է հոգնում, որ թվում է, թե ահա-ահա ոտքերը կծալվեն ու գերանդին ձեռքից ցած կընկնի: Նա ճիշտ այդ պահին է կանգնում, սրբում ճակատի քրտինքը, գերանդու կոթը խնամքով խրում հողի մեջ, դանդաղ հանում սրաքարը և սկսում երկար, պահուն ու փափուկ քսել:

«Հերու ինչ խոտ էր՝ ա՜րտ էր, ա՜րտ, բա սա ու հերվանը մե՞կ են. անտեր կարկուտը զարկեց-փչացրեց,— ասում էր առջևի հին հնձվորը, որն այնքան էր հին, որ հարևան Նարդևան գյուղի բոլոր սերունդների տղամարդիկ ամաչում ու մրցակցություն էին պահում նրա դեմ, որովհետև կոլխոզային ժամանակներում, երբ առաջ անցնելու համար իրարից թաքուն գիշերներն էլ էին հունձ անում, այդ հին հնձվորը նրանց բոլոր լավագույն հնձվորներին մեկիկ-մեկիկ լասից հանել է. նրանք լաս մտել ու գնացել են, իսկ նա սպասել է ու վերջում է լաս մտել, երբ նրանց առաջին հնձվորը արդեն լասի կեսին է հասած եղել: Նա հասել է իրենից առաջ գնացողին, ու նա չի կարողացել իր բարակ լասը նրա լայն լասին ու արագությանը հավասար տանել՝ լասից լուռ դուրս է եկել: Նա այդպես հերթով բոլորից անցել է, իսկ լասը ոչ հիսուն մետրանոց էր, ոչ էլ հարյուր հիսուն, այլ ամբողջ մարգագետնի երկարությամբ էր ձգվում: Բայց չեմ ասում, թե մերոնք նրանցից լավ հնձվորներ են՝ այնտեղ պռհապարակ հունձը լավ են անում, չնայած երբ խանութում գերանդի են ջոկում, նրանց հնձվորը մեր հընձվորի մոտ իր կարծիքը մերոնցից է փոխառնում, որովհետև մե՛ր հնձվորն է նրանց մեկիկ-մեկիկ լասից հանել, և, այնուամենայ-

նիվ, նրանց հնձվորը արանքում հասցնում է ակնարկել, որ հիմա իրենք արդեն ունեն այնպիսի հնձվոր, որը մեկիկ-մեկիկ մերոնց կհանի լասից:

Փարվանա պայծառ լճին նայող հարավային սարալանջին հնձվորները հաց ուտելուց հետո առաջին լասերի կեսին էին հասել, երբ կայծկլտող անձրևը դարձավ խոշորկաթիլ ու արագացավ: «Կանգնի՛,— ձեռքը թափ տալով ասաց Սերգո հոպարը,—երակ է՝ կզարկի-կանգնի»: «Քամի չկա,— ասաց Յաղիքյար հորոխպերը,— կաթիլը փոխվեց, կանգնի»: Օգոստոս-սեպտեմբեր արանքի խառն ամառ էր, անձրևն էլ խոշորկաթիլ ու արագ էր, իհարկե, պիտի զարկեր-անցներ և դեռ ետևից էլ ծիածան թողներ: Անձրևն իջնում էր հնձվորների տաք մեջքերին, ու նրա թշշոցը հնձվորները լսում էին, ակամա կծկում թիակները, որ վերնաշապիկի ու մարմնի միջև տաք արանք մնա: «Թևիս արի՛»,— կանչում էր Լևոնը, բայց չէր լինում՝ ինքն էլ մի պահ բռնում էր իր աջևինի ռիթմը ու անմիջապես կորցնում: «Չէ, անտերը խոտը կփչացնի»,— վերջապես ասաց հին հնձվորը և մի մեծ փունջ խոտ դնելով մեջքին՝ դուրս եկավ լասից ու քայլեց դեպի շորերը: «Անտերը ցած իջավ՝ երևի, առաջի օրվա քաղածներս կհոտեցնի»,— խոսում էին խմբով ու գերանդիների շեղբերը խրելով կանաչ, հաստ լասերի տակ, հագնում շորերը: Բայց շորերը հագած էլ անձրևը անձրև էր՝ բավականին ուժեղ էր, որովհետև դեռ աշնան մանրակաթիլ անձրևը չէր, որ միալար պիտի մաղեր ու դանդաղ թափանցեր-հասներ մարմիններին. կաթիլը իջնում էր շորին ու դեռ չթրջած՝ գլորվում-ընկնում: Հնձվորները խոտ հավաքեցին, մեջքերը դեմ արեցին խոտին ու գլուխների վրա էլ խոտ քաշելով՝ դիտում էին անձրևը: Նըրանց դիմաց անձրևի ստվերն առած Փարվանա մութ լիճն էր, որի ուղղությամբ թվում էր, թե անձրև չի գալիս, բայց որովհետև լըճից այն կողմ Փոկա, Գանձա գյուղերի վրա արև էր ու նույնիսկ երևում էին նրանց հընձվորներն ու ոչխարի հոտերը, տղամարդիկ սպասում էին անձրևի կտրվելուն:— Ահա՛ էս էլ մեր ուժեղ, մեր համառ, երեխաներին միայն իրենց հայրերի ու պապերի անունով կոչող հնձվորներն են, որոնք նստելու պահերին չեն նստում՝ տարեկից-տարեկից խմբերով, ըստ մեծերի ծիծաղով թույլ տրվող չափի իրենց երեխա ժամանակվա բաց կատակներն են անում՝ միմյանց սապոգի մեջ թաքուն ջուր են լցնում, նստատեղի տակ փուշ են դնում, իրար վիզ մասուրի մազմզուկ են լցնում ու էդպես հանգի՛ստ-հանգստանում են:

Խոտ հավաքող կանանց սարալանջից ցած, որտեղից սկսվում էր մեծ դաշտը ու հետո դարձդարձիկ հանդերով իջնում մինչև գյուղ, ամպշող ու խուսափուկ-արևոտ էր: Ութից-տասներորդ դասարանցի տղաների խումբը «Բելոռուս» տրակտորի քարշակին խոտ էր բարձում: Երկուսուկես-երեք տոննա սարի չոր խոտը, որ չորս-հինգ տոննայի տպավորություն էր տալիս, պետք էր այնպես հավասար շարել-դասավորել, որ սարի ծռուռմուռ, նեղ ճամփին չքանդվի: Չոր խոտը սըլկուն է, ճոպանները, ինչքան էլ ամուր ձգած, ծովում-թուլանում են, խոտը սահում է կողքի կամ կախվում ետևից, ու թվում է, թե ուր որ է քարշակը պիտի շուռ գա: Բայց տըղաները վաղուց էին սովորել բարձել և հիմա կեսն արդեն բարձել էին: Վարորդը տըրակտորը մոտեցնում էր հերթական բլուրին, իջնում էր ու ետևից, կողքերից բարձածին նայելով ասում. «Լավ է, լավ, լայնացրեք, արդեն լայնացրեք»:

Տղաներն ու վարորդը արդեն մի ամիս է իրար հետ էին՝ տրակտորի մեջ իրենց ջուրն ունեին, իրենց հաստ շորերն ունեին, սխեռ հավաքելու իրենց տոպրակն ունեին ու տրակտոր քշել էլ համարյա թե սովորել էին. հարթ հանդերից ու մարգագետիններից խոտը տանելիս իրենք էին բլուրից բլուր արանքներում տրակտորը քշում: Այս տրակտորը թեթև բարձած չէր իջնում: Անտեղի չէր խափանվում, մյուսների պես երեք կամ հաճախ էլ չորս անգամ չէր խոտ բերում՝ նա բերում էր չորս, հաճախ էլ հինգ անգամ, իսկ նրա տղաները ամենալավ բարձողն էին լինում, և իրենք էլ չգիտեին, թե ինչպես են այդքան լավ ու իրենք իրենց ընտրվել:

Ամեն տրակտորի հետ փոցխավոր աղջիկ կար, որ տղաների դասընկերուհիներից էր լինում, և նրանց անզգույշ արարքները՝ ասենք, եղանին չափից դուրս շատ խոտ առնելը, տրակտորը տեղից կտրուկ պոկելը, քրտնել-մեջքը չծածկելը, ճոպանները ձգելիս ձեռքը ճոպանի տակ թողնելը աղջիկը նախատում էր հավասար սրտացավությամբ ու անկողմնակալ հոգատարությամբ: Տղաները, ինչքան էլ սովորական գիտեին այդ ամենը, այնուամենայնիվ, թաքուն տեսնում էին քաջությունն անելու միմյանց ջանքերը, և յուրաքանչյուրին թվում էր, թե այդպես մյուս երեքն են անում, ինքը չի անում: Անպայման դրանից էր, որ չորսն էլ սիրում էին խոտը դատարկելուց հետո նորից սար վերադառնալը: Չորսն էլ գոտու վրա հանգույց արած վերնաշապիկների կոծքերը բաց, մերկ, արևա-

հար մարմինները իրենց գնացքի արագության քամուն տված կանգնում էին կամ քարշակի առջևի կողմում՝ իրար ուս բռնած, կամ էլ եղանն էին դիմհար դնում ու ուսով հենվում: Փոցխավորը վարորդի խցիկից ետ՝ նրանց էր նայում, տրակտորը, ծուխ անելով, սարի քարքարոտ ճամփի վրա վեր-վեր էր թռչում, գյուղին մոտիկ դաշտերից երևում-անցնում էին ման գալու ելած հովեկ այլալեզու՝ գրական խոսող աղջիկներ, ծերերից կանչում էին «կընկնեք, ա՛յ շանորդիներ, մեկ էլ տեսար՝ կընկնեք, է», և տղաների տրակտորը քաջ ալանում էր նրանց ահաբեկող վտանգների, կանչերի, հայացքների ու վախերի միջով:— Սարից խոտ իջեցնող մեր տղաներն էլ էդ են՝ ամբողջ ամառն այդպես քաջ ալանում էին ու չէին կարողանում գոնե հովեկ գույնզգույն, շիտակ աչքերի մեջ նայող աղջիկների կողքով անցնել կամ էլ, եթե իրենց տներն էին եկել, մոտները հաց ուտել. նրանց տեսնելիս ճամփաները փոխում էին, ու այդ պահերին թվում էր, թե այդ գյուղը իրենց գյուղը չէ:

Բայց գյուղը իրենց և միայն իրենց գյուղն էր: Բոլորն էլ տներում տատ ունեին, տնամերձերի թմբերը օրը երկու-երեք կարճ լաս հնձելով ծերությունը ցրող պապ ունեին: Հունձը սկսվելու առաջին օրերից պապերը տնամերձերն էին հնձում՝ մի երկու թափ քաշում էին իրենց ձեռքի հին, կարճկոթ գերանդին (որովհետև ինչքան կռանում-փոքրանում էր ծերացող պապը, այնքան էլ կարճանում էր գերանդու կոթը և մաշվում շեղբը), նըստում, հանգստանում էին, էլի էին հնձում ու էլի հանգստանում՝ նստած տեղերից ձեռքով պոկելով քարերի արանքների խոտը, որովհետև այնտեղ գերանդի չէր խաղա: Եվ երբ իրիկնադեմին վեր էին կենում տուն գնալու, տեսնում էին, որ ահագին հնձել են՝ մի երեք-չորս կարճ լաս, ու էնպես որ շարունակեն, երևի թե տասնհինգ օրից ամբողջ թումբըն էլ պրծնեն, և բոլորովին չեն հիշում, որ մի երեսուն-քառասուն տարի առաջ այդ նույն թումբը հնձում էին մի շնչով:

Ցերեկը պապի փոքրիկ, դեռ դպրոց չգնացող աղջիկ թոռը թեյամանով պապին ջուր էր բերել ու ծաղիկ հավաքելով-ծաղիկ հավաքելով մեկ էլ տեսել էր, որ արդեն տուն է հասել: Ահա, պապը մի ձեռքով թեյամանը, մյուսով՝ գերանդին, թոռնիկի համար էլ մի փունջ վառ ծաղիկներ բռնած (որովհետև ցերեկվա նրա հավաքածները հիմա թառամած կլինեին կամ էլ երեխեն կորցրած կլիներ)՝ հանդի փափուկ, մաշվելուց կարճ մըտնացող խոտով ճամփան բռնած դանդաղ գընում էր տուն: «Արի, արի,— դեռ հեռվից կանչեց տատը,— էդ երեխուն ո՞նց ես մենակ թողել. բա որ կորչեր, սար գնար, ես ի՞նչ ձուն պիտի տայի գլխիս»: «Է՜,— մոտեցավ ու նոր ասաց պապը,— թան չունե՞ս»: Տատը ցերեկը ճիլ պանիր էր շինել ու երկու աթոռների վրա փայտ դնելով՝ վրայից կախել, որ շիճուկը քամվի ու պանիրը երկարի: Տատը ցերեկը խնոցի էր հարել, ու կարագի դույլը դրել սառը ջրով լի պղնձի մեջ, որ կարագն ամրանա: Տատը ցերեկը թանապուր էր եփել, որ ծաղկափոշուց ու սարի չոր հացից ծարավ-ծարաված հնձվորը գա, ուտի, և թանապուրի թեթև ջերմությունից բացվի լարված, հոգնած մարմինը: Տատը պապի դիմաց նստեց, թոռնիկը եկավ, տատի գոգին քանդելով ծաղիկների փունջը՝ սկսեց իրեն գեղեցիկ թվացած ձևով նոր փունջ հավաքել, ու տատըն ասաց. «Էս էլ մենք՝ ծերացանք՝ պարապ մնացինք. գործներս ի՞նչ է, որ կերածներս էլ ինչ ըլնի. կե՛ր, պանիր կեր»: «Սարում ոնց որ թոն է եկել,— ասաց պապը,— անտերը խոտը հոտեցնելու է»:

Բայց չէ, սարում այդքան ուժեղ ու առատ չէր անձրևը, մանրիկ էր, և հնձվորները երկար նստեցին: «Չէ, էլ էս խոտը թրջվեց, լեշ դարձավ, չի հնձվի»,— ասաց հին հնձվորը, և գերանդիները պահելով խոտերի տակ, նըրանք իջան սարից: Անձրևը հասավ մինչև խոտ հավաքողներին: Հաասակավոր կանայք ասացին՝ երակ է, կանցնի, հլա նստեք: Տըղաներն ասացին՝ գնանք, է, թաց խոտն էլ հավաքե՞ն: Երեխամայրերն ասացին՝ հավաքվի էլ՝ ինչ պիտի հավաքենք, արևն անցավ: Աղջիկներն ասացին՝ ցրտեց, որ նստենք՝ կըպաղենք: Եվ կանայք եղաններն ու փոցխերը ուսերին առնելով՝ իջան սարից: Անձրևն իջավ հյուսիսային սարալանջով և խըշ-խըշ զարկեց չոր խոտին: «Բարձե՛ք, բարձե՛ք»,— ասաց Հրաչը: «Էս մեկն էլ բարձենք՝ իջնենք, թե չէ թաց խոտը չեն ընդունի»,— ասաց փոցխավոր աղջիկը: Տղաները չորս-հինգ եղան անելով բարձեցին խոտի կիսատ բլուրը, ճոպանն արագ ու անփույթ կապեցին, հետո եղանները խոր խրեցին բարձած խոտի մեջ, որպեսզի զառիվայրերին, երբ տըրակտորը ուժեղ ցնցվի, բռնելու բան ունենան: Եվ խոտի վրա պառկած կանչեցին՝ գնացի՞նք: Նրանք տեսան դեպի Սարգիս քեռու բինան վազող խոտ հավաքողներին ու հընձվորներին, և նրանք էլ սրանց տեսան. էհե՜յ,— կանչեցին տղաները,— չթրջվե՞ք:

Հնձվորների սարալանջից դեռ չէր երևում արոտների սարահարթը, որտեղ փոքրիկ ձորակի կողքին Սարգիս քեռու բինան էր, խոտ հավաքողների սարալանջից էլ բինան դեռ

չէր երևում՝ առջևները մառախուղի թանձրությամբ անձրևի էջքով անթափանցելի պատն էր, և նրանք մտածեցին, թե հաստատ մինչև գյուղ բոլոր տարածությունների վրա էլ անձրև է գալիս: Բայց նրանք ուղիղ բինայի վրա չէին գնում: Երբ արդեն սարի ըստորոտից, որտեղից բինան պիտի երևար, թեքվեցին, տեսան, որ Սարգիս քեռին, Պալ աղբյուրը, հոտը, Կենտ եկեղեցին և բինան արեգակի մեջ հին ու խունացած պայծառությամբ փայլում են: Անձրևի փեշը սարալանջերի ստորոտից մի հարյուր-հարյուր հիսուն քայլ դեպի բինայի կողմն ավարտվում էր՝ վերջին սահմանը կարճլիկ մասրենիների հոծ ու մեծ թուփն էր, որի նոր ծիլերը հնձվորները գերանդու բկով թողնում էին, որպեսզի թուփը չտարածվի ու սարահարթը չբռնի: Մասրենու թփից այն կողմ, օգոստոսի խիստ իջած արեգակի լույսը աղբյուրի ջրի պես բեկբեկում փշրելով՝ նրանց դեմքին խփեց սարի թափանցիկ, կարծր քամին: Անձրևի սահմանը հինգ քայլ լայնությամբ էր: Հինգ քայլ գնայիր դեպի սարալանջը՝ կընկնեիր անձրևի մեջ, ետ գայիր՝ արեգակի մեջ, և հնձվորները ու խոտ հավաքողներն էլ բինայի կողմը չգնացին՝ մասրենիների թփի մոտ, որտեղ անձրև օրերին հոտերը սարի մերկ, թույլ գետինը կճղակներով փոփոխիկ էին դարձրել, նստեցին ու թաց շորերը հանելով անձրևն էին դիտում: «Երթանք մի աման մածուն ուտենք»,— ասացին Սարգիս քեռու տարեկից երեք հնձվոր: «Երթանք մասուր քաղենք»,— գոգնոցները քանդելով ասացին ջահել հարսներից: «Էկեք ծովենք՝ արտերով իջնենք՝ հլա մառդաշ շուշանը կա՝ հավաքելով-հավաքելով կհասնենք տուն»,— ասացին հասակավոր կանանցից ու երեխամայրերը: Որովհետև հասակավոր ու երեխամայր կանայք էին, նրանց ոչ ոք չասաց, թե՝ հիմի շուշան ո՞րտեղից, ի՞նչ շուշան, քանի որ նրանք շուշան հավաքելու մտքով մինչև գյուղ քայլելու իրենց պարապությունը պիտի լցնեին, որովհետև օգոստոսի դաշտում շուշանը բարակ, փայտացած ցողունով բարձր ծաղիկ է ու հիմա սերմն է թափում: «Էհ,— ասացին կանայք,— երթանք»: Նրանք գլխաշորերը թափ տալով ետ՝ դեպի սարալանջերը, մի անգամ էլ նայեցին բարակ, միալար դարձած անձրևին, փոցխ ու եղան դրեցին ուսերին ու անձրևի սահմանի հետ զուգահեռ քայլեցին ցած: «Էս էլ մեր ամառը,— ասացին կանայք,— երեկ էր՝ ծաղիկը ծաղկեց, ե՞րբ անցավ-գնաց»:

ԳԵՎՈՐԳ ԴԵՎՐԻԿՅԱՆ

# Վանդակավոր բաճկոնն էր մեղավոր

Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

Սովորականի նման ֆուտբոլ խաղալուց հոգնած, նստել էինք փողոցի ծառերի տակ հանգստանալու: Մինչև կեսօր տուն կանչող չկար: Իսկ կեսօրին չկանչեին էլ՝ մենք էինք գնալու. արդեն ստվեր գտնելը դժվարանում էր, և արաբկիրյան շոգին այնքան էլ հաճելի չէր դրսում մնալ: Այդպես հանգիստ նստել ու զրուցում էինք դեսից-դենից: Տուն շտապելու ոչինչ չունեինք. անկյունի ծորակից առավոտյան որքան ջուր տան համար պետք էր՝ տարել էինք: Նավթ էինք բերել երեք փողոց այն կողմ գտնվող նկուղ-կրպակից: Պարտեզն էլ պետք է ջրեինք երեկոյան, մինչ այդ տղաների խմբով հացի խանութ էինք գնալու. այդ ժամանակ էին ստանում մեր սիրած քառակուսի բոքոնները:

Խաչմերուկը, ուր նստել էինք, մեր ֆուտբոլի դաշտն էր: Մեր փողոցում հարմար տեղ չկար. երկու մեծ առու էր հոսում և շատ էր դարուփոս: Փողոցի երկու կողմի տների տղաներս միշտ միասին էինք, խաչմերուկից այն կողմ ապրող մեր հասակակիցներն էլ ընկերություն էին անում իրար հետ, և միմյանց հանդիպում էինք ավելի շատ դպրոցի ճանապարհին: Բայց նրանցից մեկը, որին կոչում էին մոր անունով՝ այսինչի տղա, և որն ապրում էր անկյունի տանը, միշտ մեզ հետ էր լինում: Ու քանի որ մոր անունով էին կոչում, մեզ թվում էր հայր չունի: Այդպես մտածելու պատճառ ունեինք. ապրում էր մոր ու տատի հետ:

Մի օր էլ մեզ հետ նստած հանգստանում էր, երբ նրանց տանը մոտեցավ մի բեռնատար: Տեսնելով խցիկից իջնող մարդուն, նա վեր կացավ ու վազեց: Մարդը բակ մտավ, սակայն տանը չմնաց, այլ գնաց պարտեզում գտնվող

մեկուսի ու փոքրիկ տնակի կողմը: Մեր խաղընկերը ճասավ նրան, ու մարդը սկսեց շոյել նրա գլուխը:
Երեկոյան փողոցում լուր տարածվեց, թե այսինչ ճարևանուճու ամուսինն է եկել: Բայց որտեղի՞ց՝ ոչ ոք չգիտեր: Մի երկու օր մեր խաղընկերը չերևաց, ճետո եկավ նոր շորերով ու կոշիկներով:
— Հայրս է բերել,— պարծեցավ նա,— դեռ ինչե՞ր է առնելու:
Նա էլ երևի չգիտեր ճայրը որտեղից է եկել և միայն ճպարտությամբ ասում էր, թե շատ քաղաքներում է եղել: Իսկ թե ինչու՞ էր ապրելու այդ մեկուսի տնակում, չէինք ճասկանում: Բայց դա էլ շուտով իմացանք. նա տարիներ առաջ ճեռացել էր ուրիշ քաղաք ու ամուսնացել: Այժմ էլ ետ է վերադարձել: Իսկ մեր ճարևանուճին տուն չի ընդունել, և նա էլ ապրում է այդպես մենակ:
Ավելի զարմանալի բան իմացանք. մեր խաղընկերն էլ էր փոխադրվել ճոր մոտ: Մենք, իճարկե, նրան ոչինչ չէինք ճարցնում, թեև շարունակում էր մեզ ճետ խաղալ: Եվ, ընդճանրապես, ամբողջ օրը դրսում էր ու մի տեսակ անկախ կյանք էր վարում: Ոչ ոք նրան չէր ասում՝ դասդ սովորիր, պարտեզը ջրիր, դպրոց գնա:
Այդպես խաղում էր ողջ օրը, ճոր տըված փողով կոնֆետ ու արևածաղկի սերմ գնում և մեն-մենակ վայելում, մինչև ճայրը երեկոյան տուն էր գալիս: Մենք զարմանքով էինք նայում նրա ճոր՝ իր տարիքին ոչ վայել թեթև ու մի տեսակ թըռվռուն քայլվածքին: Տարիքն այն ժամանակ մենք որոշում էինք մազերի ճերմակությամբ: Իսկ նրա մազերը կարգին ճերմակ էին: Մեր ճարևան ավելի ջաճել տըղամարդիկ տուն էին գալիս բավական ուշ, ճոգնած ու ծանր քայլերով: Այդպես էին գալիս նաև պատերազմում ամուսիններին կորցրած ու աշխատող կանայք: Բայց միայն նրա քայլքը չէր, որ մեզ զարմանալի էր թվում: Նա անսովոր վանդակավոր բաճկոնով էր (որը ես կրկեսի ծաղրածուի ճագին էի տեսել), և, ի լրումն դրա՝ նաև ծաղկավոր փողկապ էր կապում (որը նույնպես ծաղրածուի վրա էի տեսել): Բայց միայն մենք՝ երեխաներս, չէինք նրան զարմանքով նայում, մեծերն էլ էին մի տեսակ քմծիծաղ տալիս, երբ նա ճայտնվում էր փողոցում:
Այդպես նա ամեն օր գնում էր քաղաք, իսկ թե այնտեղ ինչ էր անում, ոնպես ինչ էր աշխատում՝ չգիտեինք: Հա-



ուսանները նրան տեսնում էին միայն առավոտյան ու երեկոյան և միշտ շտապելիս: Իսկ մեր խաղընկերը պարծենում էր, թե առավոտյան հոր եփած կակաոն է խմել: Ասում էր նաև, թե հայրն է լվանում իրենց շորերը, արդուկում: Դա, իհարկե, մեզ ավելի էր հիասթափեցնում: Մենք չէինք տեսել ճաշ եփող, շոր լվացող տղամարդ: Էլ ո՞ւր մնաց՝ արդուկանող: Տղամարդը մեր պատկերացման մեջ նա էր, ով հագնում էր բամբակած բաճկոն, կարկատած շալվար, մուգ գույնի բլուզ ու զինվորական ծանր կոշիկներ: Մեր աչքը դրան էր վարժված: Պատերազմը նոր էր ավարտվել:

Նրա քայլվածքն ու հագուստը իբրև թե քիչ էին ծիծաղելի, հիմա էլ պատկերացրինք նրան լվացք անելիս ու կակաո եփելիս:

Այս մեկը քիչ էր: Նրա նման երկրորդը հայտնվեց մեր թաղում:

Այդ ընտանիքն ապրում էր վարձով: Շատ ժամանակ չէ, որ եկել էր մեր փողոցը: Ծերացող մարդիկ էին՝ իրենց հարսի ու թոռան հետ: Թոռնիկը կարմրաթուշ տղա էր, մեզանից մի քիչ փոքր, սակայն միշտ կոկիկ հագնված ու մազերը խնամքով սանրած: Նա երբեք դուրս չէր գալիս փողոց խաղալու, միշտ պապի հետ էր տեղ գնում, թեկուզև խանութ: Հարսին էլ քիչ էինք տեսնում: Հարևանուհիները պատմում էին, որ ծերունու որդին, այսինքն՝ այդ տղայի հայրը, գնացել է այլ քաղաք և այնտեղ էլ ապրում է: Սակայն, ահա, մի օր մեզ ծանոթ վառ գույնի մի վանդակավոր բաճկոնն էլ իր հագին՝ հայտնվեց մի ջահել մարդ, որի վառ գույնի վանդակավոր բաճկոնի տակից երևում էին վառ գույնի վերնաշապիկ ու խայտաբղետ փողկապ: Նա ակնոց էր կրում, գլխին սվաղված մազերը փայլում էին: Հարցրեց ծերունու վարձու տունն ու այն կողմ քայլեց:

— Ոչ ու փուչ տղան է,— գլխի ընկան կանայք: Եվ ճիշտ էին: Նա տուն մտավ, իսկ դրսում հարևանները եռանդագին քննարկում էին նրա հագած-կապածը: Այս դեպքում մեզ ավելի շատ նրա փայլող ու սվաղված մազերն էին հետաքրքրում:

— Երևի վազելին է քսել,— կարծիք հայտնեց մեկը: Այդ ժամանակ մեր իմացած միակ անուշահոտ յուղը վազելինն էր: Իհարկե, օդեկոլոնի մասին էլ գիտեինք, որի սրվակները շարված էին վարսավիրանոցում: Բայց գիտեինք նաև, որ այդ սրվակների մեջ ջուր է: Այդ ջրին էլ մեր խուզած գլուխները չէին արժանանում: Դրանք պահվում էին սափրվողների դեմքերի համար:

Այդպես քննարկում էինք արտակարգ դեպքը, երբ մի երկու ժամ անց երիտասարդը դուրս եկավ տնից ու դանդաղ, գլխիկոր հեռացավ: Նրա ետևից ոչ ոք դուրս չեկավ, թեև հարևանները գիտեին, որ տանեցիները տանն են: Իհարկե, շատ էինք զարմացած: Չէ՞ որ ծնողները նրան երկար ժամանակ չէին տեսել: Ուրեմն ինչո՞ւ այդպես շուտ գնաց:

Հաջորդ օրը հարևանները այդ այցելության մասին պատմում էին արդեն մանրամասնորեն: Եվ պատմածի կարևորն այն էր, որ նրա նախկին կինը, այսինքն՝ ծերունիների հարսը, ամբողջ ժամանակ հարևան սենյակում փակված լաց էր եղել: Եվ ծերունի հայրը որդուն ասել էր.

— Նա մեր աղջիկն է, եթե կզղջաս ու ետ կգաս, քեզ կներենք, եթե ոչ՝ քո գործն է:

Եվ նա հեռացել էր:

Ծերունին մի երկու օր փողոց դուրս չեկավ: Ու երբ դուրս եկավ, աշխատելով ոչ ոքի չհանդիպել, գնաց խանութ: Նա մեր աչքին ավելի էր կռացել ու ծերացել: Իսկ թոռնիկը քայլում էր գետնին նայելով:

Մենք գիտեինք ու հասկանում էինք, որ թե՛ ծերունու կռանալու և թե՛ թոռան գետին նայելու պատճառը այդ վանդակավոր բաճկոնով ու վառ շորերով երիտասարդն է: Եվ մենք ավելի համոզվեցինք մեր այն կարծիքի մեջ, որ այդպիսի հագուստով մարդը լուրջ չի կարող լինել:

Մենք, այո՛, համոզված էինք, թե այդ այլազան հագուստներն էին պատճառը, որ մեր երկու հարևաններն էլ այդքան իրար նման, անլուրջ էին: Մեկի հայրն էր կռացել երկու օրվա մեջ ու ծերացել, և որդին էր ամաչում մեզ նայել, իսկ մյուսի որդին՝ մեր խաղընկերը, փողոցում կանգնած լեզու էր ցույց տալիս մորը, որն այնքան տարի առաջ հոր պահել ու մեծացրել էր նրան, և հիմա հայրը, երևի հասկացաք, թե ինչ ճանապարհով, խելքից հանել էր տղային, լարել մոր դեմ, թողել, որ հսկողությունից դուրս, օրը փողոցում անցկացնի:




**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**
Բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ԶՐՈՒՅՑ ՏԱՍՆՉՈՐՍԵՐՈՐԴ

# Մենուա

Սեպագրերում Մենուայի անունը որոշ գիտնականներ ընթերցում են Մինուա: Այս անունը, ինչպես էլ ընթերցվի, պարզ է, որ ծագում է բնիկ հայերեն **մե(ն)** կամ **մի(ն)** բառից, որ նշանակել է մեկը, միակը, գուցե և՝ միայնակը:

Հոր մահից հետո Մենուան թագավորեց ևս 24 տարի՝ մ. թ. ա. 810-ից մինչև 786 թվականը: Նա իր անունով փորագրել է տվել 100-ից ավելի արձանագրություններ, որոնցում պատմում է, թե ինչպես է իր պետության մեջ միավորել Մեծ Հայքի անչափ շատ իշխանություններ, ինչպիսի մեծ շինարարություններ է կատարել: Արձանագրություններից շատերում խոսվում է ջրանցք փորելու մասին:

Բայց այս երկարակյաց ու հզոր թագավորի մասին Ասորեստանի արձանագրություններում ոչ մի խոսք չկա: Նրա թագավորության ժամանակաշրջանում Ասորեստանում էր Շամիրամը (ասուրաբաբելերեն՝ Շամուրամաթ): Նա Ասորեստանի Շամշիադադ V թագավորի կինն էր մինչև մ. թ. ա. 810 թվականը: Հետո Ասորեստանի թագուհին մ. թ. ա. 810—806 թվականներին: Միաժամանակ իր որդու՝ Ադադներարի III-ի խնամակալն էր: Իսկ Ադադներարի III-ը մահացել է (կամ սպանվել) մ. թ. ա. 782 թ.: Շամիրամը մի քանի տարի ժամանակակից է եղել մեր Իշպուինիին, մոտ 30 տարի՝ Մենուային: Մեր այս թագավորի ինքնուրույն գահակալության բոլոր 24 տարիներին Շամիրամը եղել է: Իսկ Մենուայի որդի Արա-Արգիշտի I-ի թագավորության ժամանակ չգիտենք՝ Շամիրամը ողջ է եղե՞լ, թե՝ ոչ: Եթե ողջ էլ եղած լինի, ապա շատ կարճ ժամանակ, ծերացած տարիքում: Եվ հաստատ է, որ Արան ապրել ու թագավորել է շատ տարիներ Շամիրամից հետո:

Ժողովրդական զրույցներում և նրանցից օգտված Մար Աբասի ու Խորենացու գրքերում Շամիրամը ժամանակակից է Արային. Արան սպանվում է, Շամիրամը՝ մնում, Վանի Մեծ ջրանցքն է կառուցում, ուրիշ շինարարություններ անում:

Ժողովրդի հիշողության մեջ շատ հարյուրամյակների ընթացքում պատմական իրողությունները որոշ փոփոխություն են կրել, որդին փոխարինել է հորը, խառնվել են ժամանակները, և իրական դեպքերը առասպելի տեսք են ստացել: Ու դրան խառնվել են նաև Միջագետքից եկած զրույցներ: Մենուան մոռացվել է, նրա գործերի մի մասը վերագրվել է Արային ու Շամիրամին:

Մենուայի թողած շատ արձանագրություններ պարզ ասում են, որ Վանի Մեծ ջրանցքը փորել է տվել ինքը՝ Մենուան: Հիշենք՝ **«Իեսե ինի պիլի ագուբի»— «Ես այն** փորվածքը (ջրանցքը) անցկացրի»: Մենուայի այս խոսքերը կրկնված են նրա շատ արձանագրությունների մեջ: Վանի Մեծ ջրանցքը թագավորն անվանում է իր անունով՝ **Մենուայի ջրանցք**. «Հայկ աստծու հզորությամբ Մենուան, Իշպուինիի որդին, այս ջրանցքը անցկացրեց: Նրա անունն է «Մենուայի ջրանցք»: Այդ ջրանցքը սկիզբ է առնում Հայոց ձորի աղբյուրներից և ձգվում 80 կիլոմետր՝ 4 ու կես մետր լայնությամբ, մեկու-



Տառագուշակության պատկեր
Արարատի թագավորության ժամանակներից

կես մետր խորությամբ, հասնում է մինչև Տոսպ (Վան): Ջրանցքը քաղաքին ջուր էր բերում և ոռոգում շրջակա դաշտերը:

Բայց ժողովուրդը այդ ջրանցքը կոչել է Շամիրամի առու: Խորենացին էլ գրում է, որ Շամիրամն է փորել տվել: Այստեղ անպայման մի ճիշտ բան պետք է լինի: Պատահական չէ, որ Շամիրամը Մենուայի և ջրանցքը փորելու ժամանակակիցն էր:

Երևի, երբ Արարատի թագավորությունը և Ասորեստանը խաղաղ հարաբերությունների մեջ էին, ասորեստանցիները մասնակցել են Վանի Մեծ ջրանցքի և որոշ շենքերի կառուցմանը, Շամիրամն էլ այդ ժամանակ երևի Հայքում է եղել:

Խորենացին պատմում է նաև. «Շամիրամը հրամայում է անմիջապես Ասորեստանից և իր իշխանության մյուս տեղերից փափագած տեղը բերել քառասուներկու հազար սևագործ բանվորներ և ընտրյալներից վեց հազար մասնագետ բանվորներ, որոնք կատարելապես հմուտ էին փայտի, քարի, պղնձի և երկաթի գործի արհեստներում... Եվ հրամայում է՝ նախ գետի ամբարտակը շինել ապառաժ խոշոր քարերով, կրի և ավազի շաղախով, շատ լայն ու բարձր, որ մինչև այժմ, ինչպես ասում են, հաստատ մնում է»: Ըստ Խորենացու, Շամիրամը Վան-Տոսպում ջրանցքի հետ միասին, շքեղ պալատներ ու ապարանքներ է կառուցում: Այստեղ չափազանցություններ կան, գուցե հեքիաթի է նման, բայց Մենուայի օրոք ասորեստանցիները կարող են օգնած լինել հայերին:

Սեպագրերի ընթերցումն, իրոք, մեզ ասում է, որ Մենուան կարողացել էր Ասորեստանի հետ բավական ժամանակ լավ հարաբերություններ ստեղծել: Նրա երկարատև թագավորության ընթացքում միայն երկու ընդհարում է եղել ասորեստանյան և հայկական զորքերի միջև, այն էլ Վան-Տոսպից հեռու:

Հարավում խաղաղություն հաստատելով՝ Մենուան իր ուշադրությունը դարձրեց Մեծ Հայքի արևմտյան, միջին ու հյուսիս-արևմտյան մի շարք մասեր Արարատի պետության մեջ միավորելուն: Ինչպես հայտնի է հայ ժողովրդի ամբողջ պատմությունից, Մեծ Հայքի մեծ ու փոքր նախարարությունները հաճախ էին ձգտում անջատվել հայոց կենտրոնական պետությունից: Իսկ այդ պետության ղեկավարները ձգտում էին միավորել ու վերամիավորել անջատ իշխանությունները (այս երևույթը եղել է նաև այլ ժողովուրդների մեջ):

Մենուան մերթ խաղաղությամբ, մերթ էլ դաժան պատերազմներով իր կենտրոնական պետությանը միացրեց Մեծ Հայքի նորանոր շրջաններ: Այդ շրջաններից են Կարսից մինչև Սև ծով և Ճորոխ գետն ընկած տարածությունը, Տայքը, Արաքսի հովիտը, Սևանա լիճն իր շրջակայքով: Մենուան շարժվելով դեպի արևմուտք՝ հասավ մինչև Ծոփք (Ծոփանի), նույնիսկ դուրս եկավ Մեծ Հայքի սահմաններից և գրավեց Փոքր Հայքի Մալաթիա (Մելիտեա) քաղաքը: Հարավ-արևմուտքում նվաճեց Աղձնիքը (Ալզին) և այլն: Հարավ-Արևելքում նա մտավ Մանա երկիրը, որ գտնվում է Ուրմիո լճից դեպի հարավ-արևելք:

Ահա մի հատված Մենուայի այն արձանագրությունից, որտեղ պատմված է, թե ինչպես է ինքը իր թագավորությանը միացրել Մեծ Հայքի Տայք կոչվող հյուսիս-արևմտյան աշխարհը: Տայքը սեպագրերում կոչվում է Դիաուխի: Հայոց Կարին քաղաքի մոտ գտնըված այդ արձանագրության մեջ գրված է. «Հայկ աստվածը արշավի ելավ իր զենքով՝ Տայք հզոր աշխարհի դեմ: Հայկը հզոր է, Հայկ աստծու զենքը հզոր է: Հայկ աստծու

ւզորությամբ արշավի ելավ Իշպուինիի որդի Մենուան, նրան առաջնորդում էր Հայկ աստվածը: Մենուան ասում է. Ես նվաճեցի Տայք երկիրը, կռվով ես գրավեցի Զաշիու թագավորանիստ քաղաքը: Երկիրը այրեցի, ամրոցները քանդեցի... Մենուան ասում է. Տայքի թագավոր Ուտուպուրշինին հայտնվեց իմ առաջ, գրկեց իմ ոտքերը, երեսնիվայր ընկավ: Ես գթությամբ վերաբերվեցի, խնայեցի նրան՝ պայմանով, որ հարկերը վճարի: Նա ինձ տվեց ոսկի և արծաթ, տուրք տվեց»:

Այսպես, Մենուան մի շարք ուրիշ հաղ անջատ իշխանությունների էլ է հնազանդեցնում և մեծահոգաբար ներում կենտրոնական թագավորությանը չհնազանդվողներին՝ նրանց հաղթելուց հետո:

Վանի Մեծ ջրանցքից բացի, Մենուան ուրիշ շատ շինարարություններ արեց: Արաքսի ափին նա կառուցեց իր անունով քաղաք, որը հետո հայտնի էր Ցոլկերտ, հնում Ցոլակերտ անունով:

Պետք է ենթադրել, որ Մենուան լինելով քուրմ, զբաղվել է գուշակություններով: Խորենացին գրում է, որ հնուց Հայոց աշխարհում սովոր էին գուշակություն անել սոսի ծառերի օգնությամբ, նրանց «տերևների հանդարտ կամ սաստիկ շարժվելուց, նայելով քամու ուժին և ուղղությանը»:

Գերմանացի հնագետ Պետեր Կալմայերը գրում է, որ Արարատի թագավորության ժամանակաշրջանից պահպանված մի շարք նըկարների և բարձրաքանդակների մեջ պատկերված ծառերը և նիզակի ծայրի նմանվող տերևներն ու ճյուղերը Խորենացու հիշած գուշակությանն են վերաբերում: Տերևը եղել է Հայկ աստծու խորհրդանիշը:

Ահա Մենուան զբաղվել է նաև այդպիսի տերևագուշակությամբ: Ընդհանրապես, Վանի հայոց թագավորների մի մասը եղել է նաև քուրմ կամ քրմապետ: Դա երևում է սեպագրերի ուշադիր ընթերցումից:

Ըստ ժողովրդական զրույցների և նրանցից օգտված Մար Աբասի ու Խորենացու, Շամիրամի ասորեստանյան զորքերի դեմ պատերազմելիս սպանվել է Արա Առաջինը: Բայց մենք կտեսնենք, որ Արան Մենուայի որդին էր և Շամիրամից հետո երկար ապրեւ է: Իսկ Մենուան մահացել է մ. թ. ա. 786 թվականին, որից հետո Շամիրամը երևի մի քանի տարի ապրել է: Ուրեմն, ոչ թե Արան, այլ Մենուան կարող է սպանված լինել Ասորեստանի զորքերի կողմից: Շատ հարյուրամյակներ հետո ժողովուրդն իր զրույցներում հոր սպանվելը վերագրել է նրա որդուն ու ստեղծել գեղեցիկ առասպել:

(շարունակելի)



ՀԱՅԿ ԽԱՉԱՏՐՅԱՆ

# ՏԵՂԱՆՈՒՆԸ ՊԱՏՄՈՒՄ Է



## ԱՆԳԵՂԱԿՈԹ

Սիսիանի շրջանում, Որոտան գետի ձախ ափին Անգեղակոթ անունով մի գյուղ կա: Զարմանալի անուն է, այնպես չէ՞: Բայց երևի դուք չգիտեք, որ գյուղը միանգամից չէ Անգեղակոթ կոչվել: Անվան կեսն ստացել է երկու հազար տարի առաջ, երկրորդ կեսը կպել է առաջինից հազար տարի հետո:

Սկզբում կոչվել է Անգղ: Դե, չկար ծեք, թե անգղ են ասում միայն գիշատ թռչունին: Մեր պապերը անգղ էին ա վանում նաև ամանի, ասենք սամբյուղ կամ պարկի կանթը, բռնելատեղը, ու կը: Այս գյուղում շատ ցորեն էին ցա նում: Կալսելուց հետո ոսկեհատիկ ցո րենը լցնում էին իրար կողքի շարվա պարկերի մեջ: Պարկի բերանին մի քա նի օղակներ էին կարում, նրանց մի ջից մի բարակ չվան անցկացնում ծայրերը ժողովելով՝ կապում, որ ցո ռենը դուրս չթափվի: Անգղը պարկի այդ կապված բերանն է: Այդ գյուղի շինա-

կանները այնքան վարպետորեն էին անգղ սարքում, որ հարևան գյուղերից մարդիկ գալիս, նայում էին, հիանում ու իրենք էլ սովորում այդտեսակ անգղ անել:

Եվ իրար հետ զրուցելիս ասում էին.

— Իսկական անգղները միայն այսինչ գյուղում են սարքում:

Այսպես՝ անգղ, անգղ ասելով, գյուղը կոչվեց Անգղ:

Հազար տարի հետո Անգղի շինականները ցորենի պարկերի անգղի նոր ձև հնարեցին, որը շարժեց հարևան գյուղերի բնակիչների նախանձը:

Հիմա էլ ասացին.

— Սրանց սարքածը անգղ չէ, անգղ, իսկական կոթ է, կոթ:

Չնայած դա համարյա նույն բանն է, բայց մարդիկ հին Անգղին կցեցին կոթ բառը և գյուղը վերանվանեցին Անգեղակոթ, որ նշանակում է կրկնակի անգղ կամ կրկնակի կոթ ունեցող:

## ԱՆԻ

Ասում են հայոց ոսկեմայր և ոսկեծղի Անահիտ աստվածուհու փաղաքշական անունը եղել է Անի, որ նշանակում է ամենագեղեցիկ:

Միջնադարում այդ անունն է կրել Հայաստանի մայրաքաղաք Անին՝ մինչ այդ Հայոց աշխարհում եղած բոլոր քաղաքներից ամենագեղեցիկն ու ամենաշքեղը: Այստեղ աստվածային ուժով փայլատակել է հայ մարդու կառուցողական պերճարվեստը:

Հնում այլևայլ երկրներում կառույցները համեմատում էին միմյանց հետ, ջոկում-ջոկջկում և փառքի արժանացնում ամենաընտիրը: Այդպես են հռչակվել աշխարհի յոթ հրաշալիքները: Անիում ընդունված չէր ջոկջկել: Այստեղ հրաշալի էին բոլոր կառույցները: Ինքը՝ Անին, իր անվանը պատշաճ հրաշալիքների հրաշալիքն էր:

## ԱՇՆԱԿ

Աշնակ գյուղը Թալինի շրջանում է: Այս անունը այնքան հին է, որքան տարվա չորս եղանակները՝ գարունը, ամառը, աշունը և ձմեռը:

Հնում կարծում էին, թե աշունը դեղնածամ աստվածուհի է, որ ապրում է Արագած լեռան վրա և տարին մի անգամ իջնում ու դեղնաթույր է դարձնում Հայոց աշխարհը: Դրա համար Արագածի հարավ-արևմտյան կողմի լեռնազագաթը, նրա լանջերից սկիզբ առնող գետը և լեռան փեշերին գտնվող գյուղը կոչել են Աշնանակալ, այսինքն աշունը կալող, աշունը պահող: Հետագայում Աշնանակալը սեղմվել է և դարձել Աշնակ:

## ԱՇՈՒՆՔ

Տայքի անտառախիտ անկյուններից մեկում մարդաշատ մի մեծ գյուղ կար, որտեղ աշունն սկսվում էր ամառվա կեսերին և հասնում մինչև ձմեռվա կեսը: Հայոց աշխարհի ուրիշ ոչ մի կողմում աշունն այնքան տևական չէր լինում, որքան այստեղ: Այդ պատճառով էլ մարդիկ գյուղը կոչել են Աշունք:

## ԱՊԱՐԱՆ

Մեծ ու գեղեցիկ ավան է Քասախ գետի ափերին փռված Ապարանը: Երկու հազար տարեկան է: Սկզբում գետի անունով կոչվել է Քասախ: Երկրորդ դարում ավանն այդ անունով է հիշատակում հույն նշանավոր աշխարհագրագետ ու քարտեզագիր Պտղոմեոսը:

Ավանը Նիգ գավառի կենտրոնն էր, Գնթունիների նախարարական տոհմի նստավայրը: Գնթունիներն այստեղ կառուցել են մի շքեղաշուք ապարանք, որի շնորհիվ տասներորդ դարից Քասաղ ավանն սկսեց կոչվել Ապարանք, որ նշանակում է պալատ: Ժամանակի ընթացքում տեղանվան վերջին ք տառը սղվել է և մնացել միայն Ապարանը:

Հիմա ձեզնից մեկնումեկը կասի՝ դա ի՞նչ բան է, ի՞նչ կարիք կար ապարանք գեղեցիկ բառի ք տառը դեն գցել:

Ես պատասխանում եմ.

— Ժողովուրդը միշտ էլ ձգտել է բարեհնչության: Ամենագեղեցիկը ժողովրդի հղկած անունն է:

# Պապս

Աշխարհում շատ կան գանձեր բազմազան,
Թանկարժեք քարեր, ոսկի ու արծաթ,
Իսկ մեր տանն, ահա, բոլորիս համար
Ամենաթանկը, մեր անգին քարը
Մեկն է միմիայն՝ պապիս նկարը:

Ծնված չեմ եղել, երբ մի օր հանկարծ
Դարձել է պապս զինվոր փառապանծ
Ու հայրենիքի որդիների հետ
Կռվի է ելել նենգ ոսոխի դեմ:

Ընկել է պապս մեծ պատերազմում
Հայրենիքի շատ զինվորների հետ՝
Հանուն մեր ազատ, ուրախ այսօրվա
Ու նաև հանուն երջանիկ վաղվա:

Մանուկ օրերից նրա հետ եմ միշտ
Մտքեր բաժանել, մեղմիկ զրուցել,
Կախված է նկարն հորս սնարին՝
Որպես սուրբ մասունք, որպես տխուր երգ:

Գյուղում այսօր էլ մեր տան շեմին մոտ,
Ուր միշտ բուրում է վարդի անուշ հոտ,
Որ կարծես թաքուն խոսող հուշ լինի
Կանգնած է վերծից մի ծեր ուռենի.
Գեղեցիկ ու վեհ այդ ամպհովանին
Պապս է տնկել ջահել օրերին:

Որքան մեծանում, հասակ եմ առնում,
Ծառն այդ գնալով ինձ թանկ է դառնում,
Եվ եթե մի օր մարդիկ ինձ հարց տան,
Թե հայրենիքն իմ՝ ծաղկող բուրաստան.
Սկիզբ է առնում որտեղի՞ց, ումի՞ց,
Պատասխան կտամ ես նրանց այսպես՝
Իմ պապի տնկած ուռենու ծառից:

ՀԱՍՄԻԿ ԿՈՒՐՂԻՆՅԱՆ
Արթիկի շրջան, Նոր կյանք գյուղի
միջն. դպր. 8-րդ դասարան



ՆԱՐԻՆԵ ՖՐԱՆԳՈՒԼՅԱՆ
Լենինական № 34 դպրոց
(ինքնանկարի մրցույթ)



ՆԱՐԻՆԵ ԵՆԳԻԲԱՐՅԱՆ, 13 տ.
Հոկտեմբերյանի շրջ. գ. Փշատավան

ՌՈՒԶԱՆՆԱ ԱԲՐԱՀԱՄՅԱՆ, 13 տ.
Կիրովական, «ԾԱՂԻԿՆԵՐ»

ՇՈՒՇԱՆԻԿ ԳԵՎՈՐԳՅԱՆ
Կիրովական № 2 դպր., 5-րդ դաս.
(ինքնանկարի մրցույթ)

**ՓԱՌԱՆՁԵՄ ՎԱՐԴԱՆՅԱՆ**



Նկարը՝ ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

Ապրում էինք գյուղում, ունեինք կով ու ոչխար, հորթ ու գառներ, խոզ ու խոճկոր, հավ ու աքաղաղ, որ մեր մանկության անբաժան ուղեկիցներն էին: Առավոտ վաղ մայրս կթում էր կովն ու ոչխարը, շտապում կոլխոզի գոմը՝ կթելու նաև իր խնամքի տակ գտնվող հանրային կովերը: Իսկ մենք մեր անասուններին հանձնում էինք նախրապանին ու հովվին, հորթերին կապում արտի եզրին ու թողնում դասի:

Եղավ մի ժամանակ, երբ չէր կարելի այլևս մեկ կովից ավելի պահել: Գյուղի նախիրը արագ նոսրանում էր: Կովերն անգամ տխուր էին, ասես կարոտում էին նրանց, որ արդեն մթերման էին գնացել: Մեր կովերից մնաց Սոնա անունով կովը: Նա ցեղական էր, առատ կաթ էր տալիս և ջահել էր դեռ: Մի հպարտ, մի կարմիր կով էր: Այնպես էր քայլում նախրի մեջ, կարծես թագուհի լիներ: Մեր մանկությունը նրա հետ գարնանը բարձրանում էր սարերը, աշնանն իջնում՝ մի տարով մեծացած:

Բայց ահա նրա օրն էլ հասավ: Հորթը, որ մի փարթամ երինջ էր դարձել, արդեն կարող էր մորը փոխարինել: Եթե կարելի լիներ, երկուսին էլ կպահեինք: Բայց օրենքով արգելված էր, նաև անասնակեր ճարելն էր դժվար:

Մի առավոտ հայրս Սոնա կովն արոտ չուղարկեց: Եկավ, արթնացրեց ինձ:

— Վեր կաց, մորդ հետ կովը տարեք հանձնելու:

— Ու՞ր,— քունը գլխիս էր՝ չհասկացա ես:

— Մթերակայան:

Սիրտս ճմլվեց: Հագնվեցի, գնացի գոմ: Սոնան լուռ նայեց ինձ: Նա մեր կյանքի լավ ընկերն էր, մեզ կերակրողը: Եվ հիմա նրան հրաժեշտ էինք տալու: Եվ հիմա հպարտ չէր գալու մտնի բակը, բառաչելով դուրս կանչի մեզ, մզզա, հորթին փնտրի, գտնի՝ լիզի:

Երկաթե կապը վզին՝ նրան դուրս բերեցինք: Մոտ երկու կիլոմետր պիտի տանեինք մինչև մթերակայան: Վերջին անգամ կերակրեցինք, ջրհորի զուլալ ջրով ջրեցինք և արցունքոտ աչքերով ճամփա ընկանք:

— Հալալ լինի կերածդ, Սոնա ջան, մեզանից մի նեղացի,— ասաց հայրս և երեսը շուռ տվեց: Նա էլ էր հուզված:

Հարց էր՝ կընդունեի՞ն այսօր, թե պիտի տանեինք-բերեինք: Անասուն իրացնելու շնորհք մենք չունեինք: Այնպես որ մթերակայանը միակ տեղն էր, ուր պետք է հանձնեինք մեր Սոնային:

Գնացինք: Հայրս չեկավ, վատառողջ էր: Սոնային քշեցինք, տարանք: Սկզբում խելոք, հնազանդ քայլերով գնում էր մորս ետևից: Հետո սկսեց դիմադրել. ինչ-որ բան էր նախազգում: Հասանք մթերակայան: Լիքը ժողովուրդ, լիքը անասուն: Ընդունողները ձգձգում էին գործը, որ անասունները կերած-խմածից բեռնաթափվեն: Մի քանի կիլոգրամի համար տանջում էին և՛ մարդկանց, և՛ անասուններին: Դժգոհեիր՝ ետ կտային անասունդ, և վերջ: Տանեիր ի՞նչ անեիր՝ դիմացը ձմեռ էր, ձմռանը ընկնում էր անասունի գինը՝ կեր ճարելու դժվարության պատճառով:

Կեսօր էր: Անասուններն ակնհայտորեն ծարավել էին ու քաղցել: Մոտակայքում ջուր չկար: Մենք էլ էինք քաղցել: Հապճեպ հետներս առած կապոցը բացեցինք, մի քիչ հաց ու պանիր կերանք: Սոնային էլ տվեցինք: Հսկա կով ու մի բուռ հաց: Տխուր նայում էր մեզ: Ճարպիկ աղջնակ էի, բայց ելք չէի գտնում: Դես-դեն նայեցի: Հեռվում աշնան խոզան արտերն են: Դեզեր կան: Գնացի վախվխելով, մոտեցա արտին: Գարի էր՝ դեղին, մշահոտ: Ջրից ազատված հողերի վրա է արված ցանքսը, հողերն՝ սպիտակ, բերքը՝ անհամ: Հողն էլ պիտի համ ունենա, որ տվածի մեջ համ լինի: Ինչևէ, մի մեծ խուրձ արեցի, պահակը հեռվից նկատեց, բայց ես չքվեցի սատանի պես:

— Սոնա ջան, կեր:

Մյուս կովերն էլ վրա եկան, խլխլեցին: Մի բուռ էլ չհասավ Սոնային: Նա պատառ խլել չգիտեր, հպարտությունը թույլ չէր տալիս մանր-մունր հոգիների նման վրա ընկնել պատառին: Մնաց քաղցած:

Կեսօրն անցավ:

— Մի բան ասեք, այ մարդիկ, ընդունելու՞ եք, թե՞ չէ,— դժգոհեց մի գյուղացի:

Մյուսները էլ հետևեցին նրան: Վերջապես մարդկանց բողոքներին ականջ դնող եղավ, եկան, սկսեցին կշռել, թղթեր գրել: Ինչ արին, ինչ՝ չէ, չգիտեմ, մայրս ընկրճված ասաց՝ միջակից ցածր գնահատեցին: Սոնայի նման կովին՝ միջակից ցա՞ծր: Հավատալս չէր գալիս:

Կարգադրեցին անասուններր տանել, կապել գոմում: Սոնան ասես արդեն հասկացել էր, որ մենք իրենից հրաժարվում ունքերից, սիրտը պայթում էր ասես, փորձում էր կտրել կապ ու կապանք, թըռչել իր սարերը, թռչել դեպի իր հորթուկը:

Դուրս եկանք: Տուն հասանք լուռ, հանցավորի նման:

Երեկոյան իմացանք, որ մեր բարեկամ Հարութը ուզել է կով գնել: Ասել են, որ մեր Սոնան լավն է: Գնացել, մթերակայանից տուն էր տարել:



ենք: Բայց թաքուն հույս կար աչքերում: Չէ՝ որ տանը հորթն էր մնացել, հո չէի՞ն բաժանելու զավակից, ո՞վ կաթ կտար նրան: Դժվարությամբ նրան ներս տարանք: Բառաչում էր, նայում սարերին: Նա մեզ այլևս չէր տեսնում. իր սարերի հետ էր: Նա հենց այդտեղ խռովեց մեզնից, զգաց դավաճանությունը և չուզեց հասկանալ մեր անելիքների վիճակը: Նա չտեսավ, որ մեր աչքերում արցունքներ կան, քանի որ ինքն էր լալիս մարդու պես: Արցունքները գլոր-գլոր հոսում էին նրա սիրուն, խոշոր ու խելացի աչքերից, գլորվում այտերն ի վար:

— Սոնա ջան, մի նեղանա մեզանից:— Ծոյեցի, համբուրեցի Սոնայի թաց աչքերը: Նա փնչացնում էր, կրակ էր թափում

Ուրախացանք:

Մորթվելուց հո լավ է,— մտածեցի,— մեկ-մեկ կգնամ, կարոտս կառնեմ: Ուրեմն կապրի իմ Սոնան:

Ավա՜ղ, պարզվեց, որ նա իր նոր տանտիրուհուն մոտիկ չի թողնում, որ կթի ճար չեղավ, չընտելացավ նրան, տանտիրուհին բարկացավ՝ էսպես չի լինի, և Սոնային նորից տարան մթերակայան, այնտեղից էլ՝ սպանդանոց:

Մորս կարծիքով Սոնան կարոտում էր մեզ, մեր տանը, որ նաև իր տունն էր, չէր ընտելանում նոր տանտիրուհուն ու նոր տերերին և ավելի լավ համարեց սպանդանոց գնալ, քան մնալ նրանց մոտ:

— Աստղը նրանց աստղին չբռնեց,— ասաց մայրս:

ՇՈՒՇԱՆԻԿ
ՂԱԶԱՐՅԱՆ

# ՂՈՒԿԱՍՅԱՆ

Ղուկասյանի շրջանի ներկա տարածքում մարդիկ բնակություն են հաստատել շատ վաղ ժամանակներից: Այդ են վկայում կիկլոպյան ամրոցի մնացորդները Ցողամարգում և ավելի քան երեք հազարամյա բնակավայրի հետքերը Լեռնագյուղում: Տարածքի մեծ մասն ունի 2000 մետր բարձրություն, առավելագույնը 3198 մետր է: Լեռնային բարձրադիր մասերում տարածված են ալպյան գորգերը: Բնակչությունը մեծ մասամբ զբաղվում է գյուղատնտեսությամբ ու անասնապահությամբ: Ղուկասյանով է անցնում Երևան—Ախալքալաք մայրուղին:



Թավշուտի պատանի մեխանիզատորներ Վռամ Քեշիշօղլյանը, Ռաֆիկ Մկրտչյանը և Արա Նուրիջանյանը:



Ղուկասյանի աշակերտների նվաճած գավաթները։



ՏԻԳՐԱՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ 13 տ

Լուսանկարները՝ ԱՇՈՏ ՍԱՐԳՍՅԱՆԻ

Այս տվյալները վերցված են Հայկական սովետական հանրագիտարանից։ Սակայն այս ժլատ ու կարճառոտ փաստերի ետևում մարդիկ են, որոնք ապրում են աշնան անվերջանալի անձրևների, խստաշունչ ձմռան անանցանելի ճանապարհների, գարնան համատարած ցեխի ու Աշոցք աշխարհի կարճատև, բուռն ամռան, կանաչ, ջրառատ ձորերի և բլուրների վրա ծվարած փոքրիկ գյուղերում։ Ցողամարգ, Վարդաղբյուր, Սալուտ, Սարապատ, Զույգաղբյուր, Թավշուտ, Արփենի և էլի ու էլի հրաշալի գյուղեր, որտեղ, ինչպես Խորենացի պատմիչը կասեր՝ պատմելու արժանի շատ բան կա։ Այստեղ ապրում են ուժեղ, իրենց հող ու ջրին սիրահարված մարդիկ, և այդ դժվար սերը ձեռք է բերվել դաժան կլիմայի, հող ու քարի հետ ամենօրյա ծանր կռվով։ Ղուկասյանցիները, ում հանդիպեցի, դժվար ապրելու իրենց ճակատագրից չէ, որ դժգոհում էին, ինչպես սովորաբար է լինում։ Զրույցների մեջ ավագները, պատահում էր, հիշում էին այլ վայրեր գնացածներին, որոնք ամառները գալիս, ջուր էին խմում իրենց իսկ կանգնեցրած հուշարձան-աղբյուրներից, այցի գնում մերձավորների շիրիմներին ու, իրենց պարտքը կատարած համարելով, վերստին հեռանում՝ հաջորդ տարի մի անգամ էլ գալու խոստումներով։ Այսպես, ապրում է ղուկասյանցին՝ անցյալի ու վաղվա արանքում, նոր տներ է կառուցում, ցանում ու մշակում է հողը, ծառեր է տնկում։

Ղուկասյանի ամենամեծ դպրոցը շրջկենտրոնում է։ Ունի 524 աշակերտ. նորակառույց, բոլոր հարմարություններով, լուսավոր, խնամքով ձևավորված սրահներով, բարեկարգ, կանաչ հրապարակով։ Երբ ներս մտանք, դպրոցում խաղաղության միտինգ էր, դահլիճում հավաքվել էր ողջ աշակերտությունը՝ թղթե ճերմակ ու կապույտ աղավնիները ձեռքներին՝ «Ոչ պատերազմին», «Մենք խաղաղություն ենք ուզում» կոչերով, կարմիր, սպիտակ դրոշակներով։ Հավաքվել էին իրենց արդար, անմեղ ձայնով խաղաղություն պահանջելու, և դահլիճն ասես ջահել զանգ լիներ՝ մանկական զրնգուն, կայտառ լեզվակով։ Մելանյան, Վահագնը, Դիանան, Վարդանը տեղից ելնում, կարդում են բանաստեղծություններ՝ նվիրված խաղաղությանը, հաղթանակին, կարդում են ոգևորված, ներշնչանքով։

Եվ հաղթանակի հավատն իմ սրտում
Անցա մարտերի ահեղ բոցերով,
Այս մանկան համար անհոգ ու ժպտուն
Թևավոր բախտի ճամփա բացելով։

Փողփողում, ծածանվում են դրոշները, դահլիճը ալեկոծվում է, երեխաները միաբերան ու համահունչ արտաբերում են՝ «Մենք պատերազմ չենք ուզում, ո՛չ պատերազմին...»։

Դպրոցի ուսմասվար Վարդան Գրիգորյանը, ցույց տալով ցուցասրահներն ու հին ամանեղենի հավաքածուն, ասաց, որ դպրոցը առհասարակ միջոցառումների լայն ծրավալ

ու ավանդույթներ ունի: Շրջկենտրոնում ուրիշ դպրոց չկա, չկա պիոներտուն կամ մանկական այլ օջախ, բացի երաժշտական դըպրոցից: Այդ պատճառով հասկանալի է, որ գեղարվեստական, սպորտային ու տեխնիկական բոլոր խմբակները կենտրոնացած են այստեղ, գործում են այս դպրոցում, և դասերից հետո էլ մինչև ուշ երեկո չեն մարում աղմուկները: Երկրորդ հարկի ընդարձակ միջանցքում բացված է պատանի նկարիչների ցուցահանդեսը: Նկարների թեման հարազատ բնության ու ծաղիկների հետ ամենօրյա առնչությունն ու անմիջական շփումն է, հայկական ժողովրդական հեքիաթների նկարազարդված էջեր, դիմանկարներ, որոնցում ամենից գրավիչը գունային հետաքրքիր մոտեցումն է: Խմբակի ղեկավար Վարդան Գրիգորյանն ինքը նկարիչ է, և մասնագիտական շատ նրբություններ է հաղորդում երեխաներին: Իր գոյության վեց տարիների ընթացքում խմբակը ցուցահանդեսներ է բացել Արագածի շրջանում, Ամասիայում, Ախուրյանում: Միջանցքի մի մասում փակցված են նաև շրջանավարտների գործերը: Նրանցից, օրինակ, Տիգրան Գրիգորյանը սովորում է Երևանի Փանոս Թերլեմեզյանի անվան գեղարվեստի ուսումնարանում, իսկ մի քանիսն էլ Լենինականի գեղարվեստի ուսումնարանի փորագրության, ոսկերչական բաժինների սաներ են:

Ութից-տասներորդ դասարանցիների համար դպրոցում գործում է ժողովրդական և ժամանակակից պարերի ակումբ: Հետաքըրքիր է կազմված պարապմունքի ծրագիրը: Առաջին կես ժամում պատմվում է երգիչ-կոմպոզիտորների մասին, իսկ մյուս կես ժամը նվիրվում է պարերին, անցկացվում են երաժշտական վիկտորինաներ, մրցույթներ, լըսում են դասական երաժշտություն: Իսկ հաճախ էլ սրահը տրամադրվում է «Աշոցք» մանկական վոկալ-գործիքային անսամբլի ելույթին: Ակումբի աշխատանքներին շատ է օգնում դպրոցի ավագ ջոկատավար Հերմինե Վարոսյանը:

Դպրոցում գործում են վոլեյբոլի, սեղանի թենիսի, շախմատի խմբակներ, սակայն Ղուկասյանում առավելապես տարածված է դահուկային մարզաձևը, քանի որ ձմեռը այստեղ խիստ է, երկարատև, և հաճախ տեղից տեղ գնալու համար ձիասայլն էլ չի օգնում: Դպրոցում գործող 9 խմբակում պարապում է 224 աշակերտ, դրանք ղեկավարում է ֆիզկուլտուրայի ուսուցիչ Սայադ Մինասյանը: Դպրոցը չորս տարի անընդմեջ նըվաճել է «Հայաստանի ֆիզկուլտուրնիկ» թերթի սահմանած «Բոլորս դահուկների վրա» փոխանցիկ գավաթը: Դա նշանակում է, որ գավաթը գտել է իր մշտական հանգրվանը և այսուհետև պահվելու է այստեղ, մի բան, որ չի հաջողվել հանրապետության ոչ մի այլ դպրոցի: Նաիրան, Սեդան, Օֆելյան, Հովիկը, Միսակը, Միքայելյան Հովիկը, Վաղինակը Հայաստանի դպրոցականների 11-րդ ձմեռային սպարտակիադայի և հանրապետության բաց առաջնության չեմպիոններ են, Հայաստանի հավաքականի անդամներ: Դպրոցի շրջանավարտներից շատերը հանրապետության դահուկավազքի հավաքականի անդամներ են: Սայադ Մինասյանը նաև տնօրենն է ժողկրթբաժնին կից ձմեռային մարզադպրոցի, որն իր բաժանմունքներն ունի 10 գյուղի դպրոցներում: Բավրա գյուղից Յուրիկ և Ալմարա Գաբրիելյանները, Գառնիկ Սումբուլյանը Հայաստանի դպրոցականների բացարձակ չեմպիոններ են, Սեպասարից Մարգպետ Հակոբյանն ու Մարտունի Մելիքյանը նույնպես: Սակայն այս ամենի հետ դպրոցն ունի նաև իր հոգսերն ու պրոբլեմները: Շըրջանում չկա ասֆալտե հարթ ճանապարհ՝ ամռանը անվադահուկներով մարզվելու համար, չկա հիմնական շենք, և պարապմունքների համար շրջկենտրոնի միջնակարգ դըպրոցն է դասերից հետո տրամադրվում նըրանց: Ղուկասյանում նախատեսված է կառուցել մարզադաշտ, լողավազան, բայց մարզադպրոցի մասին առայժմ խոսք չկա:

**Նրանք ուժեղ, խելացի, ազնիվ տղաներ ու աղջիկներ են, որոնց ոչ բոլորին դուք ճանաչեցիք: Կուզենայի, որ իմանաք նաև թավշուտցի դպրոցականներ Արային, երկու Վռամներին, Մհերին, Ռաֆիկին, որոնք հըրաշալի մեխանիզատորներ են և ծնողների հետ աշխատում են դաշտերում, քույր ու եղբայր Անահիտին ու Հակոբին, որ այնպես զուլալ երգում են մեր երգերը: Կուզենայի հատկապես ճանաչեք Հայաստանի ծանրամարտի պատանեկան հավաքականի անդամ, գոգահովիտցի Վարազդատին, որը ձմռան սառնամանիք մի գիշեր, մառախուղի ու բքի մեջ մեն-մենակ հսկել էր գյուղի ճանապարհը կորցրած երեխաներին, մինչև որ լուսադեմին եկել, գտել էին ցրտից ու վախից կապտած խումբը: Պատմում են, որ երբ նրանց գտան, Վարազդատը հանել էր իր պիջակը, ինքը մնացել էր մեն-մի շապիկով, անզգայացած ձեռքի մեջ պինդ սեղմած մետաղե երկար լարը, որ գայլերը չմոտենան...**

**Ղուկասյանում, ահա, այսպիսի ուժեղ կամքի տեր երեխաներ են ապրում:**

ԳՈՒՐԳԵՆ ՍԱՐԳՍՅԱՆ

# Աղջիկը



Չէ, չի եկել հեքիաթներից,
Մեջքին չունի ոսկե գոտի.
Չեն ցոլացնում դեմքը նրա
Մարմար քարերը պալատի:

Ապրում է... Երբ նրան հիշում,
Արթնանում ես խորը քնից,
Ու ոսկեզօծ բոժոժներ են
Ասես կախվում քո քունքերից:

Ու լցվում ես բոժոժների
Զնգզնգոցով քաղցրահնչյուն,
Դառնում է օրը հարազատ,
Ջերմացնում է իր տաք շնչով:

Ջերմացնում է, ու չես մրսում
Ոչ մթան մեջ, ոչ էլ ցրտին,
Ասես լինես մի ջինջ շաղիկ՝
Իջած ծաղկի կարմիր թերթին:

Ապրում է նա... քո կրծքի տակ.
Գեղեցիկ է, լուսաթաթախ,
Անուշ բառեր է շշնջում՝
Քեզ լսելի, քեզ հարազատ...

Չէ, չի եկել հեքիաթներից,
Ապրում է նա քո կրծքի տակ,
Անուշ բառեր է շշնջում՝
Ամեն մեկիս էլ հարազատ...

Նկարը՝ ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ



ԳՐԻԳՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

# Արժանապատվություն

Նկարը՝ ԿԱՐԵՆ ՍԱՄԲԱՏՅԱՆԻ

Շատ էի ուզում հեծանիվ ունենալ: Ուշք ու միտքս հեծանիվն էր: Ու ինչպե՜ս կպահեի... Ամեն առավոտ կփայլեցնեի, անվերը կձգեի, լույսեր կդնեի, հետո կքշեի ու կքշեի...

Մեր բակում առաջին հեծանիվ ունեցողը Անդոն եղավ: Երբ Անդոյի հայրը հեծանիվը բերեց, Անդոն բակում չէր: Բակում միայն ես էի: Գնդակ էի տշում: Հեծանիվը որ տեսա, աչքերս այնպես փայլատակեցին, որ Անդոյի հայրը նկատելով, ժպտաց

— Հը, լավն է, չէ՞:

— Լավն է,— մի քիչ խզված ձայնով պատասխանեցի ես: Անդոյի հայրը հեծանիվի զանգըծլնգացնելով նորից հարցրեց.

— Անդոն էս ո՞ւր է:

Առանց հարցին պատասխանելու ես վազեցի Աստուրենց տուն՝ Անդոյին կանչելու:

Աստուրը սովորում էր մեր դասարանում: Նրանց տունը ձորի բերանին էր: Մեր բակից մինչև ձորաբերան մի երկու կանգառ կլիներ, բայց միևնույն է, ինչքան ուժ ունեի, վազեցի, որովհետև մեր բակում վերջապես հայտնվել էր առաջին հեծանիվը, Անդոյի հեծանիվը, ու ես էլ Անդոյի ամենամոտ ընկերն էի:

—Այսօր ես հեծանիվ չեմ քշի, վաղն էլ չեմ քշի, բայց մյուս օրը Անդոն կձանձրանա ու կասի՝ վերցրու, քշիր:

Գլխովս շատ գեղեցիկ մտքեր էին անցնում, երբ հասա ձորաբերան: Աստ-

տուրեճց տաճ մոտ տղաճերը ֆուտբոլ էիճ խաղում, ու Աստտուրը դարպասապահ էր: Ես կաճչեցի
— Աստ, Աճդոճ ո՞ւր է:
Աստտուրը չպատասխաճեց, որովհետև ճրաճ գոլ խփեցիճ, բայց ես ճկատեցի, որ Աճդոճ, մի քիչ հեռու, Աստտուրի հեծաճիվճ է քշում:
— Աճդո,— գոռացի ես,— սպասիր, լավ բաճ եմ ասում:
Աճդոճ կարծեց, թե ուզում եմ հեծաճիվը վերցճել ու մի քիչ քշել. արագ հեռացավ: Նա հեռվից գոռաց.
— Նոր եմ վերցրել, մի խաճգարի, թող քշեմ…
— Չէ, Աճդո, սպասիր, հայրիկդ քեզ համար հեծաճիվ է գճել…
Աճդոճ ետ ճայեց, հետո մի մեծ շրջադարձ կատարելով մոտեցավ իճձ, տեսավ՝ քրտիճքի մեջ կորել եմ, կարմրել, ու ասաց.
— Հեծաճի՞վ…
— Երկու աճիվաճի «Շկոլճիկ», հեճց ճոր բերեց…
Աճդոճ չթողեց խոսքս վերջացճեմ, միաճգամից արագացրեց հեծաճիվի ըճթացքճ ու կայծակի պես սլացավ տուճ:
Ջրաբերաճից միճչև տուճ ես ճորից վազեցի:
Մտա բակ, բայց Աճդոճ և ճրա հայրիկըճ իճձ վրա ուշադրությաճ չդարձրեցիճ, ճույճիսկ շճորհակալությաճ չասացիճ Աճդոյիճ կաճչելու համար: Նկատված լիճելու համար խփեցի Աճդոյի ուսիճ ու ասացի.
— Աճդո, շատ լավ հեծաճիվ է:
Պատի տակ աճտեր-աճտիրակաճ կաճգճած էր Աստտուրի հիճ հեծաճիվը, ու իմ գլխում միտք ծագեց…
Քաճի որ բոլորը զբաղված եճ Աճդոյի ճոր հեծաճիվով, ոչ-ոք չճկատեց, թե իճչպես ես վարպետորեճ ճստեցի Աստյի հեծաճիվը ու մեր բակից դուրս թռա…
Իճչ հիաճալի բաճ է հեծաճիվը: Ոտքի մի թեթև շարժումից սլաճում է առաջ, ու դու թռչում ես, թռչո՜ւմ… քամիճ խփում է դեմքիդ…
Աստյեճց տուճ գճալու փոխարեճ սլացա միճչև դպրոց, դպրոցի շուրջը մի երկու աճգամ պտտվեցի, ճաճապարհիճ իճձ տեսավ մեր դասարաճի Սոճիկը, հիացած ճայեց, թե իճչ վարժ եմ հեծաճիվ քշում, ես բաճի տեղ չդրեցի ու գճացի կաճգճեցի ցայտաղբյուրի մոտ:
— Այ տղա, հեծաճիվդ մի կողմ քաշիր, թող երեխաները ջուր խմեճ,— բարկացավ մի տատիկ, որովհետև հեծաճիվը առոք-փառոք հեճել էի ցայտաղբյուրիճ:
Ես բոլորովիճ չճեղացա տատիկից, որովհետև ճա կարծեց, թե դա իմ հեծաճիվճ է, ու ես շատ հպարտ էի. թող բոլորը կարծեճ, թե դա իմ հեծաճիվճ է:
Երբ հեծաճիվը կաճգճեցրի Աստտուրեճց բակում, Աստտուրը չճկատեց էլ, որովհետև ճա լավ դարպասապահ է, բայց այդ պահիճ երկրորդ գեղեցիկ գոլճ էր բաց թողել:
Ափսոս, որ հեծաճիվը ժամաճակից շուտ վերադարձրի:
Ոտքով վերադարձա տուճ:
Մայրս դիմավորեց իճձ զայրացած.
— Եթե մի աճգամ էլ լսեմ, որ ուրիշից հեծաճիվ ես փախցրել, տարել քշել, տուճ չեմ թողճի:
— Ո՞վ ասաց, որ փախցրել եմ,— զարմացա ես:
— Աճդոճ ասաց:
Հայրիկիս աշխատաճքճ այճպիսիճ էր, որ ճա գիշերճերը ուշ էր վերադառճում տուճ:
Գիշերը աչքերս բացեցի այճ ժամաճակ, երբ խոհաճոցում հայրիկս հաց էր ուտում, իսկ մայրիկս՝ խոսում էր հետը:
— Այս աշխատավարձից երեխայիճ հեծաճիվ գճեճք… Ամբողջ օրը ուրիշ երեխաների հեծաճիվճերճ է քշում:
— Տեսճեճք…,— մի քիչ տխուր պատասխաճեց հոգճած հայրիկս:
Առավոտյաճ ես ու հայրիկս միասիճ լվացվում էիճք, ու հայրիկս ժպտալով ասաց.
— Այսօր աշխատաճքից կվերադառճամ, կգճաճք խաճութ ու քեզ համար հեծաճիվ կգճեճք:
Ես չհասկացա, թե իճչ կատարվեց իճձ հետ, ու ասացի.
— Ես հեծաճիվ չեմ ուզում… ես հեծաճիվ շատ եմ քշել:
Մայրիկս զարմացած ճայեց իճձ, հայրիկս ձեռքը դճելով գլխիս, ասաց.
— Արժաճապատվությաճ ուճես, այդ լավ է, մարդ պետք է արժաճապատվությաճ ուճեճա:
Եվ չշարուճակեց, բայց ես հասկացա, որ եթե այս աճգամ արժաճապատվությաճ հաճդես բերեցի ու հայրս գովեց, ապա ուրիշի հեծաճիվճ առաճց տիրոջ թույլտվությաճ քշելը բոլորովիճ հակառակ բաճ է ճշաճակում, և հորս գովասաճքի մեջ ճաև կշտամբաճք ճկատեցի:

# «ԶՈՄԲԻՆԵՐԻ» ԱՌԵՂԾՎԱԾԸ

ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Կենսաբանական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր



Արևմտյան Աֆրիկայի ժողովուրդները «զոմբիներ» կամ «օձերի աստված» էին անվանում այն մարդկանց, որոնց սնոտիապաշտորեն վերագրում էին մեռնելուց հետո վերակենդանանալու, հարություն առնելու հատկություն։ «Զոմբիների» մասին առասպելները հատկապես մեծ մասսայականություն են վայելում Հայիթի կղզում, որը, ինչպես հայտնի է, Կարիբյան ավազանի ամենահետամնաց երկիրն է։ Այստեղ բնակչության մեջ մեծ տոկոս են կազմում անգրագետները, քիչ են դպրոցները, Հայիթին աշխարհում վերջին տեղն է գրավում հազար բնակչին բաժին հասնող ուսուցիչների թվով։ Կղզում անարգել գործում են հեքիմներն ու կախարդները, քանի որ անհամեմատ քիչ են բժիշկները։ Եվ զարմանալի չէ, որ «զոմբիների» առասպելը այստեղ այդպես հաստատուն արմատներ է գցել։

Բժիշկները տարբերում են մահվան երկու փուլ. կլինիկական և ֆիզիոլոգիական։ Կլինիկական մահվան դեպքում մարդուն դեռևս կարելի է կենդանացնել, մինչդեռ ֆիզիոլոգիական մահվան դեպքում ուղեղի բջիջները ընդմիշտ մահանում են, և մարդուն այլևս կենդանացնել հնարավոր չէ։

«Զոմբիների» առասպելը հատկապես շատ էր հետաքրքրել բժիշկ Լամարկ Դոյոնին, որը երկար տարիներ աշխատել է Հայիթիի մայրաքաղաքի՝ Պորտ-օ-Պրենսի հոգեբուժարանում։ Նա մանրամասն ուսումնասիրել է մի շարք «զոմբիների», զրույցներ ունեցել նրանց հետ, պարզել մահվան և վերակենդանացման հանգամանքները։

Մինչ այդ, ժամանակ առ ժամանակ, դոկտոր Դոյոնի կլինիկա էին ներկայանում այցելուները, հայտարարելով, որ իրենք «զոմբի» են։ Դրանք էպիլեպսիայով հիվանդ, մտավոր հետամնաց մարդիկ էին, երբեմն՝ նաև ալկոհոլիկներ։ Նրանց պատմած դեպքերը մեկը մյուսից անհավանական էին ու անհեթեթ։ Ասես բոլորը խոսքերը մեկ արած պնդում էին, որ իբր իրենց ինչ-որ մի ժամանակ «սպանել են» հարազատները կամ ծանոթները։ Հոգե-



Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

բուժական կլինիկայում, հասկանալի է, այդպիսի հեքիաթները ուշադրության չէին արժանանում, ոչ-ոք դրանք լուրջ չէր ընդունում:

Բոլորովին պատահականորեն հայտնըվեց կծիկի ծայրը, որից բռնելով, դոկտոր Դոյոնը կարողացավ պարզել ճըշմարտությունը: 1980 թվականի գարնանը Արտիբոնիտ բնակավայրի գյուղական շուկայում անհաստատ քայլերով Անգլիկե Նարսիս անունով գեղջկուհուն մոտեցավ հոգետանջ մի ծերունի: Նա թախանձագին խնդրեց կնոջը լավ նայել իր դեմքին. ինքը չի՞ հիշեցնում արդյոք իր շատ մոտիկ հարազատներից մեկին: Վախեցած գեղջկուհին շտապեց գլուխն ազատել անծանոթից: Այդ ժամանակ անծանոթը հայտարարեց, որ իր անունը Կլերվիուս է: Կինը ուշադիր նայեց ծերունուն և չկարողացավ զսպել միաժամանակյա ուրախության ու սարսափի ճիչը: Չէ՞ որ Կլերվիուսը իր եղբայրն էր, որը... մահացել և թաղվել էր շատ տարիներ առաջ:

Տեղեկանալով այդ դեպքին, դոկտոր Լամարկ Դոյոնը սկսեց զբաղվել Կլերվիուս Նարսիսով: Ամենից առաջ նա հաստատեց հանելուկային «զոմբիի» անձի ինքնությունը: Քրոջից բացի նրան ճանաչեցին ավելի քան 200 մարդ ևս: Դոկտորը հետաքրքրվեց, թե ո՞ր հիվանդանոցում է արձանագրվել Կլերվիուսի մահը: Հարկ եղավ բացել Հայիթիի Ալբերտ Շվեյցերի հոսպիտալի արխիվը, որտեղից հնարավոր եղավ պարզել, որ, իսկապես, 1962 թվականին այդ հոսպիտալում մահացել է Կլերվիուս Նարսիսը: Իր՝ Կլերվիուսի պնդումով՝ ինքը զոհ է գնացել հարազատ եղբայրների խարդավանքին, որոնք, իբր, իրեն թունավորել են իր հողաբաժինն տիրանալու համար:

Դոկտոր Դոյոնը հիշեց նման մի պատմություն: Մի անգամ նրա կլինիկան էր եկել մի այլ «զոմբի», մի կին, որը նույնպես պնդում էր, թե իբր իրեն թունավորել են բարեկամները, երբ ինքը կտրականապես հրաժարվել է ամուսնանալ մի ատելի տղամարդու հետ. բարեկամները ցանկացել են նրան կնության տալ՝ ելնելով ինչ-որ հաշիվներից: Բոլոր նմանատիպ պատմություններում հիշատակվում էին «բոկորիները» (կախարդներ): Դոկտորի գլխում միտք ծագեց «կախարդական» դեղերի մասին, որոնք գիտությանն անհայտ ինչ-որ նյութերի պարունակության շնորհիվ ինչ-որ ժամանակի ընթացքում արգելակում են օրգանիզմի կենսունակությունը: Նա գտնում էր, որ այդպիսի նյութերը կարող են լինել բնական բաղադրիչները՝ ինգրեդիենտները: Մեծ դժվարությամբ նրան հաջողվեց տեղական կախարդներից ձեռք բերել բույսերից պատրաստված դեղանյութ, որը նա կենսաքիմիական ու ս ու մնասիրությունների համար ուղարկեց ԱՄՆ-ի ճանաչված գիտական կենտրոններից մեկը: Դեղանյութով զբաղվեց Հարվարդի համալսարանի երիտասարդ գիտնական Ուեյդ Դևիսը, որը քաջ տեղյակ էր Լատինական Ամերիկայի և Աֆրիկայի երկրներում լայնորեն տարածված բուժիչ հեքիմադեղերին:

Առաջին իսկ անալիզները ցույց տվեցին, որ Հայիթիից ուղարկված պատրաստուկները պարունակում են ոչ միայն բուսական, այլև որոշ օրգանական բաղադրամասեր: Սակայն ի՞նչ բնույթի էին դրանք, հնարավոր չեղավ պարզել: Այդ ժամանակ երիտասարդ գիտնականը անհապաղ մեկնեց Պորտ—Օ—Պրենս և դոկտոր Դոյոնի հետ ձեռնամուխ եղավ մանրակրկիտ անալիզների: Շուտով պարզվեց, որ հեքիմաթույնի մեջ կան ոչ

միայն այնպիսի բույսերի բաղադրամասեր, որոնք խիստ գրգռում են մաշկը, այլև մանրացրած ծովային դոդոշ, որը լատիներեն կոչվում է Բուֆո մարինուս, ինչպես նաև ձկան մի տեսակ, որը պարունակում է տետրադոկսին կոչվող խիստ վտանգավոր թույնը:

Վերջին հանգամանքը ստիպեց Ուեյդ Դևիսին դիմել ճապոնական բժշկական գրականությանը: Հայտնի է, որ ամեն տարի Ճապոնիայում արձանագրվում է տետրադոկսինով թունավորվելու մի քանի դեպք, որի պատճառը ազգային դելիկատես համարվող «ֆուգու» ձկնատեսակն է: «Ֆուգուն» թունավոր է այն ժամանակ, երբ սխալ է վերամշակվում: Հայտնի էր, որ «ֆուգուն» պատրաստվում է հենց այն ձկնատեսակից, որն իրենց հեքիմադեղերում օգտագործում են հայիթյան կախարդները: Հետագա ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ ճապոնական հիվանդանոցներում արձանագրված նման թունավորումների նշանները (սիմպտոմներ) միանգամայն համապատասխանում են Ալբերտ Շվեյցերի անվան հոսպիտալում արձանագրված Կլերվիուս Նարսիսի հիվանդության նշաններին: Դա սովորաբար սկսվում է շնչարգելությամբ և ավարտվում կաթվածով: Թունավորման արտաքին նշանները ևս նույնն էին: Հիվանդը խիստ թուլանում էր, աչքերը դատարկ, ապակենման տեսք էին ստանում, գիտակցական ռեակցիան արգելակվում էր: Ուսումնասիրությունները պարզեցին նաև, որ թունավորման երկու դեպքում տուժածները մահացած են համարվել, սակայն մինչև թաղման արարողությունը վերակենդանացել են:

Այս փաստերը, գրում է «Թայմ» ամսագիրը, հաստատում են այն, ինչ Ուեյդ Դևիսը լսել է հայիթյան «բոկորներից»: Հեքիմադեղի ազդեցությունը տարբեր է տարբեր դոզաների դեպքում: Եթե այն չափից դուրս շատ է, ապա սպանում է լրիվ և վերակենդանացումն այլևս անհնար է: Սակայն «ճիշտ» դոզայի դեպքում, ասում էին կախարդները, կարծեցյալ մահացածին անհրաժեշտ է գերեզմանից հանել թաղումից ոչ ուշ քան 8 ժամ հետո, այլապես նա կարող է խեղդամահ լինել: Այնուամենայնիվ դեռևս չի հաջողվել պարզել, թե կախարդները ինչպես են իրականացնում խոր կոմատոզ վիճակում գտնվող մարդու ինքնաարթնացումը: Ու. Դևիսը և Լ. Դոյոնը գյուղացիներից լսել էին այնպիսի ծիսակատարության մասին, որի ժամանակ կախարդները «ծեծում են գետինը և արթնացնում մեռածին»: Հաջողվեց պարզել նաև, որ վերակենդանանալուց հետո մարդուն ուժով ստիպում են ուտել հատուկ մածուկ, պատրաստված քաղցր կարտոֆիլից (բատատ) և մի տեսակ բույսից, որը հայիթցիները անվանում են «զոմբիների վարունգ»: Այդ բույսը, ինչպես հայտնի է, պարունակում է այնպիսի նյութ, որն արտակարգ ուժեղ հալյուցինացիաներ կարող է առաջացնել:

Ուեյդ Դևիսը չբավարարվեց իր անալիզներով և հայիթյան «կախարդական» հեքիմադեղերի նմուշները ուղարկեց Եվրոպայի ու ԱՄՆ-ի մի քանի լաբորատորիաներ՝ լրացուցիչ քննությունների համար: Նախկինում ժողովրդական բժշկության մեջ օգտագործվող այդպիսի պատրաստուկների անալիզը հանգեցրեց կուրարե կոչվող ուժեղ թույնի հայտնաբերմանը: Ինչպես հայտնի է, ամազոնյան որսորդները այդ թույնը քսում էին իրենց նետերի սուր ծայրերին: Կուրարեն մեծ ծառայություն մատուցեց ժամանակակից բժշկագիտությանը. այն օգտագործում են վիրահատումների ժամանակ, որպես մկանները կաթվածահար անող հրաշալի ու անվտանգ միջոց: Ուեյդ Դևիսը ենթադրում է, որ տետրոդոքսինը նույնպես լայն կիրառություն կգտնի ժամանակակից բժշկագիտության բնագավառում:

Ինչպես նշում է Հարվարդյան համալսարանի բուսաբանական թանգարանի կուրատոր դոկտոր Ռիչարդ Շուլցը, նման ուսումնասիրությունները խիստ օգտակար են: «Մարդիկ,— ասում է նա,— որոնք դարեր շարունակ ապրել են արևադարձային երկրներում, հարուստ գիտելիքներ են կուտակել կենդանիների և բույսերի մասին: Ուսումնասիրել է պետք նրանց փորձը, «շուռ տալ յուրաքանչյուր քարը», այլապես շատ բան մենք կկորցնենք հավիտյան»:

Ժողովրդական բժշկությունը, եթե հիմնվում է անցյալից ստացված հարուստ գիտական ժառանգության վրա, իսկապես օգտակար մեծ դեր կարող է խաղալ: Սակայն բոլորովին հակառակ արդյունք կստացվի, եթե գործին խառնվեն տգետ հեքիմները, որոնց «բուժման մեթոդները» հակագիտական են ու սխալ:

# Քաջ փղամարդիկ

ԳԵՎՈՐԳ ԶԱՐԵՆՑ



Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Որսորդ Մարտիրոսը գյուղում անվախ մարդու համբավ ուներ: Նրա մասին շատ անհավատալի բաներ էին պատմում: Գյուղի ջահելներից Արամն ու Սուրենը որոշում են խաղ խաղալ Մարտիրոսի գլխին, որևէ առիթով անտառ տանել նրան ու վախեցնել, ցույց տալ, որ նա էլ իրենց նման մարդ է:

Մի օր, երեկոյան, Արամը գնում է Մարտիրոսի տուն: Հիսունն անց որսորդը հրացանի փողն էր մաքրում: Երկար զրույցից հետո Արամը դիմում է Մարտիրոսին.

— Ինչո՞ւ չես մի անգամ էլ ինձ հետդ որսի տանում, Մարտիրոս քեռի:

— Բա դու ե՞րբ ես ասել, Արամ ջան, որ չեմ տարել: Ուզո՞ւմ ես, արի էգուց էլ գնանք,— պատասխանում է Մարտիրոսը:

— Ո՞ր կողմի վրա ենք գնալու:

— Կարմրաքարի:

— Հա՛, Կարմրաքարի կողմերը որս շատ կլինի: Իսկ ո՞ր ժամին...

— Ժամը հինգին դուրս կգանք:

— Դե որ էդպես է, ես գնամ տուն, քնեմ, որ վաղը շուտ արթնանամ,— ասում է Արամը և որսորդին բարի գիշեր մաղթում:

Առավոտյան դեռ լույսը չբացված՝ Արամը Մարտիրոսի մոտ էր:

— Կեցցես, ես ասի քնով անցած կլինես՝ գամ վեր կացնեմ,— Արամի «բարի լույսին» պատասխանելով, ասում է Մարտիրոսը,— գնանք:

Գնում են:

Դեռ Կարմրաքար չհասած, խոր լռության մեջ, շատ մոտիկ, մի ուժեղ կրակոց լսվեց: Գնդակը ասես Արամի ականջի տակով անցավ: Սա գույն տվեց, գույն առավ ու սարսափահար նայեց որսորդին, տեսնելու, թե Մարտիրոսի լեղին էլ, իրենի պես ջուր դառա՞վ, թե՞ ոչ:

— Ի՞նչ պատահեց քեզ, Արամ ջան,—զարմացավ Մարտիրոսն ու բռնեց նրա դողացող ձեռքը:

Արամը լուռ էր:

— Այ տղա, ձեն հանի է... ի՞նչ պատահեց:

Արամի աչքերը անդադրում շրջվել էին, ծալվում էին ծնկները ու վայր կընկներ, եթե Մարտիրոսը չգրկեր նրան:

Որսորդը նրան պառկեցրեց գետնին: Սուրենը մացառների արանքից տեսնելով ընկերոջը գետնին պառկած, կարծեց, թե գնդակը նրան է կպել, վախից գլուխն առավ, փախավ: Մարտիրոսը ձեռքերը քսեց ցողաթաթախ ծաղիկներին, ապա Արամի երեսին: Արամի աչքերը բացվեցին:

— Այ տղա, ի՞նչ պատահեց քեզ:

Արամի լեզուն կապվել էր: Վերադարձան գյուղ: Մի շաբաթ տղան չէր խոսում: Երբ լեզուն բացվեց, Մարտիրոսին պատմեց եղելությունը:

Մարտիրոսը քահ-քահ ծիծաղեց:

— Ապրեք, ապրեք, քաջեր...

# Ասույթներ բնության մասին

- «Պահպանեցեք, աչքի լույսի պես պահեցեք հողը»:
  Վ. Ի. ԼԵՆԻՆ

- «Բուսականությունը երկնքի և երկրի միջնորդն է: Այն իսկական Պրոմեթևոս է, որը կրակը փախցրել է երկնքից: Արևից փախցրած նրա ճառագայթը շարժման մեջ է դնում և՛ վիթխարի թափանիվը, և՛ նկարչի վրձինը, և՛ բանաստեղծի գրիչը»:
  Կ. ՏԻՄԻՐՅԱԶԵՎ

- «... ոչ միայն բուսական ու կենդանական աշխարհի գոյությունը, այլև մարդու անձնական և հասարակական կյանքը սերտ կախման մեջ է գտնվում հողի վերին շերտի հատկություններից»:
  Պ. Ա. ԿՈՍՏԻՉԵՎ

- «Անտառները նախորդել են մարդուն, իսկ անապատները նրա գործունեության արդյունքն են»:
  ՇԱՏՈԲՐԻԱՆ

- «Եթե մարդն ապրի բնության բարիքները քամելու միջոցով, հանուն իր հաճույքների, ապա նա կդատարկի ապագան»:
  Ա. ԷՅՆՇՏԵՅՆ

- «Բնությունը արվեստի հավերժական նմուշն է»:
  Վ. ԲԵԼԻՆՍԿԻ

- «Բնությունը չի կարող հակառակվել մարդուն, եթե մարդը չի հակառակվում նրա օրենքներին»:
  Ա. ԳԵՐՑԵՆ

- «Բնությունը մի գիրք է, որը պետք է կարողանալ կարդալ և ճիշտ հասկանալ: Նրան սխալ հասկանալը մեծ վնաս է բերում: Բոլոր այն մոլորությունները, որ կան աշխարհում, առաջացել են բնությունը անբավարար ճանաչելուց կամ բոլորովին չճանաչելուց: Եվ այդ մոլորությունները կարելի է հերքել միայն բնությունը ճիշտ ճանաչելով»:
  ՄԻՔ. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

# ՊԱՏԿԵՐԱՍՐԱՀ



ՀՈՎՀԱՆՆԵՍ ՇԱՐԱՄԲԵՅԱՆ (1926—1986) «ՆԱՏՅՈՒՐՄՈՐՏ»
(ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՊԱՏԿԵՐԱՍՐԱՀ)

---

● «Երջանկությունը բնության հետ լինելն է, այն տեսնելը, նրա հետ խոսելը»:

**Լ. ՏՈԼՍՏՈՅ**

● «Բնությունը կատակներ չի ճանաչում.
Նա միշտ արդարացի է,
Միշտ լուրջ է,
Միշտ խիստ է,
Նա միշտ ճշմարտացի է.
Սխալներն ու մոլորությունները
Մարդկանցից են բխում»:

**ԳՅՈԹԵ**

● «Հողին պետք է տաս շատ ավելին, քան նրանից վերցնում ես»:

**Կ. ՉԱՊԵԿ**

● «Սերը հայրենի երկրի նկատմամբ դժվար է պատկերացնել առանց նրա բնության նկատմամբ սիրո»:

**Կ. ՊԱՈՒՍՏՈՎՍԿԻ**

Նյութը խմբագրությանն է տրամադրել
**ՀԱՍՄԻԿ ՀԱԿՈԲՅԱՆԸ**

---

Գլխավոր խմբագիր՝ **ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ**

Խմբագրական կոլեգիա՝ ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ. ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ.:

Պատասխանատու քարտուղար՝ ՏՈՆՈՅԱՆ Թ., գեղարվեստական խմբագիր՝ ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ., տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Շ., սրբագրիչ՝ ԱՅՎԱԶՅԱՆ Վ.:

